

# ՊԻՈՆԵՐ 1. 1979



1979 ԹՎԱԿԱՆԸ
ԵՐԵԽԱՆԵՐԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏԱՐԻՆ Է

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

# ԱՀԱ ԵՎ ՆՈՐ ՏԱՐԻ

**Այնտեղ՝ վերում
Պապն էր նիրհում՝
Մտած ամպե վրան,
Հասակը ձիգ
Ու պլացիկ,
Բուքն էր հսկում նրան:**

**— Զարթնի՛ր, պապի՛,
Զարթնի՛ր, պապի՛,
Արի՛ հանդեսը մեր,
Առանց պապի
Չկա կարգին
Նոր տարի ու ձմեռ:**

**Տարօրինակ,
Անօրինակ
Հայտնվեց մի թռչուն,
Տեսե՞ք, պապին
Նստած ամպին
Դեպի մեզ է թռչում:**

**Մոցից հանում,
Շուրջն է ցանում
Փաթիլներ ու քամի,
Ճերմակափայլ,
Ժիր ու կայտառ
Ծերունի է նա մի:**

**— Ահա՛ նվեր,
Ահա՛ ձմեռ,
Ահա՛ ձեզ Նոր տարի...
Պայծառ դահլիճ, -
Աղմուկ ու ճիչ
Շուրջը տոնածառի:**

*Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐ



## Ձմեռ պապի ժամանումը

**Ձմեռ պապը ապրում է Անտարկտիդայում: Երեվան ժամանելիս որոշեց այս անգամ գալ Աֆրիկայով: Ձմեռ պապը չգիտեր, որ դեկտեմբեր ամսին Աֆրիկայում պղդքան շոգ է: Նա սովորականի պես հագել էր իր սպիտակ քուրքը, գլխին դրել նույնպիսի փափախ: Ձմեռ պապիկը մի քանի քայլ առաջ գնաց և, ա՜յ քեզ զարմանք՝ ճակատին շարվեցին ջրի կաթիլներ: Նա արագացրեց քայլերը, հետո ստիպված եղավ վազել, սակայն վազելը չօգնեց, նա հալվում էր ու հալվում: Մինչև տեղ կհասներ, նա ամբողջովին հալվեց:**

**Իսկ այստեղ՝ Երևանում նրան անհամբեր սպասում էին մանուկները: Նրանք տեսնելով, որ Ձմեռ պապն ուշանում է, սկսեցին տխրել: Մի քաջ տղա որոշեց գնալ Ձմեռ պապի ետևից: Դուրս եկավ տանից, ճանապարհ ընկավ և գնա՜ց, գնա՜ց... Շատ գնաց թե քիչ, մեկ էլ նրա առջև հայտնվեց մի փոքրիկ աղջիկ: Նա հագել էր սպիտակ շորեր, իսկ գլխին դրել էր մի գեղեցիկ թագ: Աղջիկը մոտեցավ տղային և տխուր ձայնով ասաց.**

● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# ԵԹԵ... ԵԹԵ...

Եթե արջը քուն չմտներ,
Նապաստակը չվախենար,
Եթե գայլը սոված-ծարավ
Չչափչփեր դաշտ ու արոտ
Եվ հավքերը չնաշխարհիկ
Չչվեին հեռու հարավ,
Եղնիկն էլ գուցե այնժամ
Վեր չկենար, չգար մեզ մոտ:

Բայց քանի որ արջը քնել,
Նապաստակն էլ վախկոտ է շատ,
Իսկ գորշ գայլը սոված-ծարավ
Տուն չի դառնում ցուրտ դաշտերից
Եվ հավքերն են չնաշխարհիկ
Թևին տվել չվել հարավ,
Եղնիկն է զուգվում շքեղ,
Այցի գալիս մանուկներին:

Եվ ծնվում է հրաշք մի տոն
Երգի, լույսի ու խաղերի,
Ու տարածվում են ամեն կողմ
Մանուկների ձայներ զվարթ:
Պար են բռնում մեկիկ-մեկիկ
Դիմակները գազանների...
Եվ տոնածառն է շողշողում
Գոհ ու հպարտ:

ՅԱԿԱՆՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ

— Փոքրի՛կ տղա, դու իզուր ես որոնում Ձմեռ պապին: Երբ մենք անցնում էինք Աֆրիկայով, խեղճ Ձմեռ պապիկը հալվեց: Նա ուղարկել է ինձ, որպեսզի ձեզ հայտնեմ այդ մասին:

Տղան, ճիշտ է, շատ տխրեց, բայց չուզեց, որ տխրեն նաև մյուս երեխաները, որոնք իրենից փոքր էին: Նա որոշեց փոխարինել Ձմեռ պապին: Եվ ահա ներկայացավ նա Ձմեռ պապի շորերով:

— Ձմեռ պապին եկա՜վ, Ձմեռ պապին եկա՜վ...— ուրախացած բացականչեցին երեխաները:

Պապիկը, որ հալվել էր, գոլորշիացել և դարձել էր մի ամպի քուլա, իր ամպե թևերով Աֆրիկայից հասավ Երևան, որտեղ երեխաները ուրախ երգում էին ու պարում:

Երևանում շատ ցուրտ էր և ամպի քուլան դարձավ ձյուն ու սկսեց իջնել ներքև: Նա կարծես շտապում էր, որպեսզի շուտ հասնի երեխաների մոտ: Իսկ երեխաները ձյունը տեսնելով՝ ավելի ուրախացան: Նրանք չգիտեին, որ դա իրենց սիրելի Ձմեռ պապն է, որ հալվել է, բայց դարձյալ չի մոռացել իրենց:

Եվ այսպես ամեն տարի Ձմեռ պապը փորձում է գալ Երևան, բայց տեղ չի հասնում, և որպեսզի երեխաները չտխրեն, մի քաջ տղա հագնում է Ձմեռ պապի շորեր, ներկայանում երեխաներին, ուրախացնում նրանց:

*ԱՍՅԱ ԲԱՍԵՆՑՅԱՆ*

*Երևանի № 148 դպրոց, 8-րդ դասարան*

● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ● ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ



# ՁՅՈՒՆԸ

Խորհրդավոր լռություն է ամենուր,
Ձյունը վերից թափվում է մեղմ ու քնքուշ,
Սառը շունչ կա, և կա անուրջ, ձյունի բույր,
Այնպես լա՜վ է ձյան մեղեդին ու անուշ:

Փաթիլները մի հեքիաթ են ինձ պատմում,
Ու իջնում են թիկնոցի պես իմ ուսին:
Ես չեմ մրսում ձյունե ճերմակ աշխարհում,
Ձյունը ունի տաքո՜ւկ-տաքո՜ւկ ու մեծ սիրտ:

*ԱՐՄԻՆԵ ՍԱՐԳՍՅԱՆ*
*Երևանի Հակոբ Հակոբյանի անվ. դպրոց, 8-րդ դասարան*



# ՔՈ ԵՐԳԸ

Դու քնքշորեն երգում ես,
Եվ քո երգը պարզ ու տաք
Կամաց, թեթև ու անտես
Մվարում է սրտիս տակ:

Լուսինն ասես ցած ձգվում,
Ցանկանում է քեզ լսել,
Կախարդական երգը ինձ
Ստիպում է երազել:

Լուսինն իր ցողով արծաթ
Օծում է քեզ, հմայում
Ու իր լույսով կաթ առ կաթ
Քո մազերն է հինայում:

Դու քնքշորեն երգում ես,
Եվ քո երգը պարզ ու տաք
Մվարում է արդեն, տես,
Լուսնկայի սրտի տակ:

*ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ*
*Երևանի № 59 դպրոց, 10-րդ դասարան*

# Կհանձնես Ալգելեմի բնիկներին



Չորս կողմը վառվող նեոնային լամպերը ցերեկվա տպավորություն էին ստեղծել, չնայած արդեն գիշեր էր: Մարդաշատ պողոտայից բաժանվող մի սալարկված փողոցով գնում էին երկու երեխա: Նրանք կանգնեցին մի հսկա կարմիր սլաքի տակ, ապա շարունակեցին իրենց ճանապարհը սլաքի ցույց տրված ուղղությամբ: Սլաքի վրա՝ հանգչում-բռնկվում էր «Տիեզերական թռիչքների կենտրոն» ազդակը:

Քիչ հետո նրանք հասան բարձր պլաստմասսայե պարիսպներին և մոտեցան բաց դարպասներին: Երբ նրանք փորձեցին անցնել, նրանց ճանապարհը կտրեցին մի քանի մեխանիկական պահապաններ:

— Մի՞թե չի հաջողվի նրան տեսնել,— նստելով նստարանին, ասաց երեխաներից մեծը՝ 10 տարեկան մի կապուտաչ աղջիկ:

— Մի՛ հուսահատվի, մի բան կմտածենք,— մեծի նման հույս տվեց փոքրը՝ 7 տարեկան մի տղա:

Մի քանի րոպե նրանք լուռ նստել էին: Հանկարծ երևաց մի էլեկտրամոբիլ և ուղղվեց դեպի դարպասները:

— Սպասեցե՛ք, սպասեցե՛ք,— գոչեց տղան:

Մեքենան կանգ առավ: Երեխաները մոտեցան մեքենայից իջած սպիտակահեր քեռուն և խնդրեցին, որ իրենց էլ ներս տանի:

Ներսում ծերունին նրանց առաջնորդեց մի սենյակ, որի պատերը, գրապահարանները, սեղանները տնքում էին գրքերի, ձեռագրերի, մոդելների, փորձանոթների, նկարների ու տարօրինակ սարքերի ծանրությունից: Ծերունին, որ արդեն գիտեր, թե ինչու են եկել և ում են ցանկանում տեսնել երեխաները, մոտեցավ սարքավորումներին, սեղմեց մի կոճակ, պտտեց մի բռնակ: Վառվեցին մի քանի լամպեր ու հանգչան: Քիչ հետո ներս մտավ մի երիտասարդ, մոտեցավ ծերունուն և ակնածանքով հարցրեց.

— Դո՞ւք եք կանչել, պրոֆե՛սոր:

— Ո՛չ, այս չարաճճիները,— նա ցույց տվեց երեխաներին ու դուրս գնաց:

— Ինչո՞ւ եք եկել,— գրկելով իր եղբորն ու քրոջը, հարցրեց երիտասարդը: Նա գիտեր, որ նրանց հայտնի է, որ ինքը վաղը թռչելու է Ալգելեմ մոլո-

րակը, որպեսզի որոնի նախորդ արշավախմբի հետքերը: Մինչ այդ այնտեղ ուղարկվել էին երեք հրթիռ: Դրանցից առաջինը պայթեց տեղ չհասած, երկրորդը՝ հասավ մոլորակին, բայց նորից կործանվեց, երրորդը, որը գլխավորում էր իրենց հայրիկը, տեղ հասավ, հաղորդեց մի քանի տագնապալի ազդանշաններ, իսկ հետո լռվեց ռադիոտի սարսափահար ձայնը՝ մեռնում ենք: Գիտությունը ցանկանում էր պարզել Ալգելեմի առեղծվածը, և ահա տասը տարի անց այնտեղ էր ուղարկվում յոթ հոգուց բաղկացած նոր արշավախումբ: Այդ բոլորը հայտնի է երեխաներին, էլ ինչո՞ւ են եկել:

— Ես նկարել եմ մի աղավնի, խաղաղության ճերմակ աղավնի,— սկսեց աղջիկը,— և ցանկանում եմ, որ նվիրես Ալգելեմի բնիկներին: Թող այնտեղ էլ իշխի խաղաղության աղավնին:

Նա ցույց տվեց կապույտ պաստառի վրա նկարված ճերմակ աղավնին: Տղան գրպանից հանեց մի բուռ ցորեն և ոգևորված սկսեց.

— Այս մի բուռ ցորենը կնվիրես այնտեղի բնակիչներին: Թող այնտեղ ծփան ցորենի արտերը:

— Եվ բացի դրանից կասես հայրիկին՝ թող շուտ վերադառնա: Մենք նրան շա՜տ-շատ ենք կարոտել:

Թախիծ իջավ երիտասարդի ժպտուն դեմքին. նա մտածեց. «Ինչ մեծահոգի են այս փոքրիկները: Նրանք կարծում են, թե այնտեղ կան բանական էակներ... եթե կան, ապա նրանք երևի սպանել են մեր հորը: Այս փոքրիկներն ահա նրանց ցանկանում են երկու արքություն՝ խաղաղություն և լիություն»: Նա գիտեր, որ գիտնականները ժխտել են Ալգելեմի վրա կյանքի գոյության հավանականությունը: Հրթիռները կարող էին ունենալ այնտեղ կատարվող լեռնագոյացման պրոցեսներից կամ կարող էին վառվել խիտ մթնոլորտի շերտը ճեղքելիս, կարող էին պայթել դյուրավառ գազերի բռնկումից:

— Գնացեք տո՛ւն և մխիթարեք տատիկին ու մայրիկին,— ասաց նա համբուրելով նրանց ճակատները:

Մյուս օրը բազմահազար հանդիսատեսներ եկել էին հրաժեշտ տալու յոթ խիզախներին, որոնք ճամփորդելու էին վտանգավոր տիեզերքով, փորձելու էին լուծել Ալգելեմի առեղծվածը: Ամբոխը ալեկոծվեց. երևացին օրվա հերոսները: Նրանք վերջին հրաժեշտը տվին հասարակությանը և իրենց հարազատներին: Երիտասարդը հրաժեշտ տվեց տատիկին, մայրիկին, քրոջն ու եղբորը և մի կողմ քաշված մի սիրունիկ աղջկա: Հասավ մեկնելու պահը:

— Չմոռանա՜ս հանձնել մեր նվերները,— բացականչեց քույրը՝ թափահարելով ձեռքը:

— Չմոռանա՛ս հաղորդել մեր ողջույնը հայրիկին և այնտեղի բնիկներին,— գոչեց եղբայրը:

— Չե՛մ մոռանա,— հեռվից գոչեց երիտասարդը:

Նվագախումբը նվագեց տիեզերքի հիմնը և բազմահազար սրտերում թնդաց արձագանքը... Կարծես բոլորը ցանկանում էին, որ իրենց ձայնը հասնի օվկիանոսներն ակոսող բոլոր նավերին, տիեզերքը ակոսող հրթիռներին ու հեռավոր միգամածություններին:

Նվագախումբը լռեց, լռե՛ց նաև ամբոխը: Ուժեղ դղրդոցով հրթիռը պոկվեց մայր հողից, մի պահ փայլեց կապույտ երկնակամարում ու անհետացավ:

*ԱՐՄԵՆ ԵՂՈՅԱՆ*

*Թալին Կաքավաձոր. 9-րդ դասարան*


Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

# ԼԵՆԻՆԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ

ԱՐԱՄԱՅԻՍ ՍԱՀԱԿՅԱՆ

Կրեմլ՝ Լենինի մոտ
Մի ծերուկ է գալիս.
— Իվան Պուտինցևն եմ,
Ուրյուպատունսկ գյուղից:

Հավաքել ենք դրամ,
Նույնիսկ բար ենք գնել
Եվ ուզում ենք գյուղում
Քո արձանը դնել:—

Լենինը մտերմիկ
Ժպտում է ծիծաղել.
— Իսկ ձեր գյուղում, պապի՛կ,
Շա՞տ կան երեխաներ:

— Դե, իհարկե, շատ են,
Վկայի՛ միր Իլյիչ,
Բայց ենց որ հարցիս ենտ
Դա կապ չունի մի քիչ:

— Թե ուզում եք, իրոք,
Որ լավ զգամ ինձ ես,
Խնդրում եմ՝ այդ փողով
Բացեք մանկապարտեզ...



1970 թվականին՝ առաջնորդի ծննդյան 100-ամյակի առթիվ Նրա ծննդավայր Ուլյանովսկ քաղաքում կառուցվեց ճարտարապետական ինքնատիպ մի շինություն՝ մարմարակերտ հուշակենտրոն: Հուշակենտրոնի չորս դահլիճներում անցկացվում են կարևոր խորհրդակցություններ, հավաքներ, երիտասարդական միջոցառումներ: Նրա ստեղծմանը մասնակցել են բոլոր հանրապետությունների ներկայացուցիչները, նվիրելով ավելի քան կես միլիոն աշխատաժամ: Մարմարակերտ համալիրն իր մեջ է առել կանաչապատ ու ծաղկազարդ փայտաշեն մի տնակ: Այդ տանն է ծնվել համաշխարհային պրոլետարիատի առաջնորդ Վ. Ի. Լենինը:



# Ցանկանալն էլ քիչ բան չէ...

Անուշավանը նստել էր ջրաղացի մաշված քարին ու, ձեռքը աչքերի դեմ բռնած, մայմրրուքի մեջ չերևացող աչքերով նայում էր: Հին, տեղ-տեղ կարկատած բամբակավոր բաճկոնը գցել էր ուսերին, բոբիկացել և ոտքերը դրել էր մանր ու տաք կանաչի վրա:

— Բարաջողում,— մոտեցավ Տացուն ու շալակի կիսատ պարկը տարավ, դրեց ջաղացքարի կողքին:

Անուշավանը լուռ քորեց կզակի տակը ու ծխախոտի փոքրիկ քնթուկը նետեց ջրի մեջ:

— Ասսուբարին,— ասաց նա:

— Էն անտեր ձիերը,— շարունակեց նա,— ամբողջ օրը վազվզեցին, խոտը փչացրեն, են: Էգուց-մյուս օրը հունձը որ սկսվի, հնձելու բան չի լինի:

Խճուղու մոտ, արահետի ծայրին, երևացին չորս-հինգ երեխա, գոտկատեղերից վերև՝ մերկ ու կարմիր: Մեկի ձեռքում երևում էր երկար, խոտ խրձելու պարան, մյուսը ձիու ամբողջ սանձը գցել էր իր վիզն ու վազվզում էր արահետի կողքերին:

— Երեխեքի՜ն տես, Տացո՛ւ,— ասաց Անուշավանը,— տես, ո՜նց են նարդլանցիների ձիերը ֆըռֆըռացնում:

— Կրոնեն,— ասաց Տացուն,— էս է կրոնեն:

Երեխաները պարանը գցեցին մի ձիու վիզը ու քաշում են: Սանձը ձեռքին բռնած երեխան մոտենում է ձիուն ու փորձում սանձը գցել նրա գլուխը, ձին խրտնում է, ցնցում գլուխը, գնում-գալիս կանգնած տեղը: Մյուսները գոռգոռում են՝ մի ուրիշ ձիու շուրջը հավաքված:

Մի երկու երեխա վազեցին քիչ ցած ու, հանվելով, լցվեցին ջուրը:

— Հե՛-հե՜յ,— գոռաց Անուշավանը,— հե՜յ, շա՛ն լակոտներ, ջրից դո՛ւրս եկեք, հե՜յ, ջուրը կքշի ցած:

— Շան լակոտներին ջուրը քշելու է, բերի ջաղացը գցի,— ասաց Անուշավանը: —Հե՜յ,— գոռաց նա,— շա՛ն լակոտներ, գնացեք վերևո՛ւմ լողացեք, հե՜յ:

Ջրաղացի վերևում, որտեղ ջուրը հավաքվում է ու լցվում ջրաղացը, արևն ընկել էր կոհակների ուսերին ու փշրվում էր շարունակ նույն ձևի:

— Էն Սումբատի տղի պատմությունը դու լսել ես, չէ՞,— ասաց Տացուն:

— Մեծի՞նը, թե՞ փոքրինը,— ասաց Անուշավանը:

— Մեծինը,— ասաց Տացուն:— Ուրեմն էդ լակոտը, որ փոքր էր, մեր կտուրը դրա՛ խաղատեղն էր: Ամբողջ օրը վազվզում էր, փետից հրացան էր շինել, գցել վիզը: Ասում էր, որ մեծանամ՝ սահմանապահ եմ դառնալու: Գնում էր անձրևի տակ կանգնում ու շուրջը նայում: Փորձվում եմ, ասում էր հետո, փորձվում եմ, որ երբ մեծանամ ու գնամ սահմանապահ դառնալու, չմտածեմ, թե՝ անձրև որ գա, ցուրտ որ լինի...

Անուշավանը գնաց Տացուի բռված գարին, որ արդեն գորշ ալյուր էր դարձել, լցրեց պարկը, բերեց դրեց Տացուի ոտքերի տակ:— Էսքան եղավ,— ասաց նա,— մի քիչ էլ մեր տուն կուղարկես:

Երեխաները բռնել էին երկու ձի ու, ամեն մեկի վրա երկու հոգով նստած, գետափին գնում-գալիս էին:

— Էն մեկը չի՞ Սումբոյի տղեն,— ասաց Անուշավանը:— Էն, որ վզից բան է կախված:

— Հրացան է,— ասաց Տացուն,— փետից շինած հրացան է:

Վզից հրացան կախած երեխան ընկերոջը, որ իր ետևն էր նստել, իջեցրեց ձիուց, ծիծաղեց, հետո բարձր ճչաց ու, ոտքերը խփելով ձիուն, սլացավ մարգագետնով: Արևը թվում էր մարգագետնի մի բուռ մասը: Գյուղի վերևի կապույտ ձորերը լցվում էին սև ստվերներով:




— Սումբոյի էդ տղի մասին չի խոսքս,— ասաց Տացուն,— էն, որ բանակ է գնացել, էդ տղի մասին էի ասում: Որ երեխա էր, միտս է, սրա պես էր, իսկը սա, ոնց որ մի խնձորը կիսես:

— Էս է եղել, թե՝ էն, մեկ է էլի,— ասաց Անուշավանը,— երկուսն էլ Սումբոյի տղերքն են,

Երկուսն էլ ձիեր են ֆոֆռացնում, ուզում են սահմանապահ դառնալ: Սումբոյի սահմանապահ տղերքը,— ծիծաղեց Անուշավանը:

Տացուն հանեց մի ծխախոտ, կպցրեց՝ ափերից շնչելով փոխինձի ու ծխախոտի բույրը և, երբ նայեց իր ստվերին, գլխից ծուխ էր բարձրանում:

— Ա՜յ մարդ,— ասաց Տացուն,— էս ձի ֆոֆռացնողներից՝ ի՞նչ սահմանապահ: Սահմանապահը պիտի խոշոր բեղեր ունենա, հասակը՝ իմի ու քոնի չափ, որ թշնամին հեռվից էլ տեսնի՝ պարզանդի:

Նա վեր կացավ, կիսատ պարկը գցեց ուսն ու շուռ եկավ Անուշավանի կողմը:

— Ո՜ղջ լինես, Անուշավա՛ն,— ասաց նա,— մեր կնիկը հիմի սպասում է, գնամ:

— Կա՜ց,— ասաց Անուշավանը,— ես էլ եմ գալիս:

Իրիկնապահ էր, և թվում էր արևը սահում է մարգագետնի վրայով, գալիս, դեմ առնում ջրաղացին: Գյուղից հորթի բառաչ էր գալիս ու կնոջ ձայն: Խճուղու մոտ փոքր-մոքր երևում էին երեխաները: Գյուղը լցվել էր ստվերներով:

Մինչև արահետի մեջտեղը ոչ մեկը ձայն չհանեց: Աչքի տակով նայում էին իրենց ստվերներին ու ծայրերը չէին գտնում:

— Հրեն Սումբատի սահմանապահ տղեն,— ասաց Անուշավանը: Նա մատը մեկնել էր գյուղի վերևի ձորերի կողմը:

— Ոնց որ իսկական սահմանապահ լինի,— ասաց նա:— Չէ՞, Տացո՛ւ:

— Հա՛,— հևալով ասաց Տացուն:

Երեկոյան գյուղամիջով, նախրից հետո, նարդևանցի հանդապահները եկան իրենց ձիերի ետևից: Անուշավանը պատուհանից նայում էր նարդևանցիներին ու քթի տակ խոսում:

— Էդ ի՞նչ ես խոսում,— ասաց կինը:

— Ձիերի մասին եմ ասում,— ասաց Անուշավանը,—նարդևանցիների ձիերի: Որ մեր երեխեքը էնքան վազվզում են, ամբողջ օրը տանիքները դղրդացնում, մենք մտածում ենք, նեղսրտում ենք, ջղայնանում: Գիտե՞ս, որ էդ նույն երեխեքը, ուրեմն, գնում են նարդևանցիների անտեր, բաց թողած ձիերը բռնում, որ դաշտերը չտրորեն:

Կինը ծիծաղում էր:

— Էսօր դու Տացուին ես տեսել, չէ՞,— ասաց նա:

— Է՜, ի՞նչ անենք,— ասաց Անուշավանը:

— Տեսել ես,— ասաց կինը,— տեսել ես, ու նա քեզ պատմել է, որ ինքը, երբ փոքր էր, գեներալ էր ուզում դառնալ, չէ՞:

— Է՜, դե, ասենք, Տացուն երեխա է եղել, էդպես է մտածել,— ասաց Անուշավանը,— երեխեն ամեն ինչ էլ մտածում է, ուզում է պապագայում, ասենք, Սումբատի երեխեքի պես սահմանապահ դառնալ, կամ էլ չէ՝ Տացուի պես՝ գեներալ: Հիմի, չեն դարձել, ի՞նչ անենք: Կարող է դառնան, կարևորը, որ ուզում են: Հետո, որ դառնան էլ, իրենց համար չեն դառնալու, քեզ համար էլ են դառնալու, ինձ համար էլ, էն սարի խոտի համար էլ: Հիմի ի՞նչ է եղել,— գոռաց նա ու ձեռքը դրեց գրպանը:

— Բան չեմ ասում,— ասաց կինը:

Անուշավանը ծխախոտը դրել էր բերանը ու ժամանակ էր փնտրում, որ կպցնի:

— Չէ՛, չէ՛,— ասաց նա,— դու խոսում ես, ոնց որ եսիմ ինչ լինես: Էդպես չեն խոսի, մեր երեխեքը թեկուզ ոչ մի տեղ փայտ չեն թողել, տարել, հրացան են շինել ու ամբողջ օրը տրաք-տրաք հա տրաք-տրաք են գոռում, էլի եմ ասում, ինչ որ ուզում են՝ կդառնան:

Տացուի կինը ներս մտավ, շուրջը նայեց ու թևի տակի ճերմակ

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*



մառլայով ծածկված ամանը դրեց սեղանին:

— Էս էլ ձեր բաժինը,— ասաց նա ու ժպտաց:

— Տացուն տանն է, չէ՞,— ասաց Անուշավանը ու լռության մի պահը եղավ այնպես, երբ մոռանում է ջրաղացի ձայնը:

— Հա՛,— ասաց Տացուի կինը:

— Սպասի՛ր,— արագ ասաց Անուշավանը,— դու գիտե՞ս, որ, Տացուն, երեխա ժամանակ շատ է ուզեցել մեծանալ, գեներալ դառնալ:

— Է՜հ, Անուշավա՛ն ախպեր,— ասաց Տացուի կինը,— ուզեցել է, շատ է ուզեցել, մինչև հիմի էլ ուզում է: Մենակ թե հիմի արդեն ուզում է ուզելու համար, էնպես, էլի, գիտի, որ էլ չի դառնա, գեներալացու չի, բայց թե ուզելը միջից դուրս չի գալիս: Ցանկությունը, ասում է, թեկուզ չկատարվի, էլի լավ բան է, գիտես, որ մի բանի համար ապրում ես, մի բան աշխարհից ուզում ես: Մեծ մարդիկ էլ են էդպես ասել, ասում է: Էն օրը գիշերը վեր է կացել, բոթում է ինձ, թե՝ Խաթո՛ւն, գիտես, Սումբատի տղերքը լավ մարդ կդառնան: Քնիր, ասում եմ, ա՛յ մարդ, էս կեսգիշերին... Չէ, ասում է, ես գեներալ, սահմանապահ չդարձա, նրանք կարող է դառնան...

Պատուհանից գյուղամիջում ոչ ոք չէր երևում, մենակ ակումբի տանիքն էր ցցված: Մթության մեջ պատուհանների դեղին տարածությունները սահել էին և գետնին փռված տեղերը պայծառ էին: Գյուղի վերևից շան հաչոց էր գալիս ու մեքենայի դռռոց: Իսկ գետի վշշոցը խառնվում էր ծառերի խշշոցին:



## ՊԻՈՆԵՐ-ի փոստից

# ՊԱՏԱՆԻ ԲԺԻՇԿՆԵՐԻ ԽՄԲԱԿԸ

Մեկ տարվա պատմություն ունի Երևանի № 129 դպրոցի պատանի բժիշկների խմբակը, որի պարապմունքները ղեկավարում են բժշկական ինստիտուտի ավարտական կուրսերի ուսանողները: Այդ ընթացքում բարձր դասարանցիները ծանոթացել են բժշկության պատմությանը, դասախոսություններ են լսել տարբեր հիվանդությունների առաջացման և բուժման վերաբերյալ: Խմբակի անդամները սովորել են որոշել իրենց արյան խումբը, զեկուցումներ են կարդացել վերակենդանացման, հիվանդությունների ախտորոշման վերաբերյալ: Իսկ անցած ուսումնական տարվա վերջին, երբ արդեն նրանք բավականին գիտելիքներ էին ձեռք բերել այդ ուղղությամբ, խմբակի ղեկավարները դպրոցականներին տարան հիվանդանոց: Աշակերտները հնարավորություն ունեցան ծանոթանալու իրենց նախասիրած մասնագիտության գրավիչ ու նաև դժվարին կողմերին:

Բարձր դասարանցիներից կազմված խմբակն ունի իր «Ապագա բժիշկ» պատի թերթը, ուր տպագրվում են իրենց կատարած աշխատանքների և բժշկության վերաբերյալ նյութեր:

# Փորձադաշտում

Անցած ամռանը հանգստանում էի Վարդաբլուր գյուղում, որի մասին «Պիոներ» ամսագրում հետաքրքիր հոդված էր տպագրված: Հոդվածը կարդալուց հետո այցելեցի փորձադաշտը, ուր մեծերի հետ հավասար աշխատում էին նաև իմ հասակակիցներ Անահիտն ու Լիլյան: Ես ուշադրությամբ հետևում էի նրանց աշխատանքին: Թե՛ դպրոցականները, թե՛ մեծերը եռանդով կաղամբը մաքրում էին թրթուրներից: Դառնալով Լիլյային շշնջացի.

— Չե՞ք զզվում:

Լիլյան զարմացած նայեց ինձ: Ըստ երևույթին նա այդպիսի վերաբերմունք չէր սպասում: Մինչ նա մտածում էր պատասխանել ինձ, բրիգադի առաջավոր բանվորուհիներից մեկը՝ Սեդան առանց վիրավորանքի ու չարության ասաց.

— Եթե նման գործերից զզվենք ու չաշխատենք, որտեղի՞ց պիտի վարունգ, կաղամբ, հաց ու միրգ լինի, երկնքի՞ց է թափվելու...

Ես անխոս հեռացա նրանցից և որքան մտածում էի այդ մասին, այնքան ավելի էի ամաչում իմ անտեղի խոսքերից:

*ԱՍՅԱ ՇԱՀԲԱԶՅԱՆ*
*ԿԻՐՈՎԱԿԱՆԻ № 5 միջն. դպրոց*




*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*Բանասիրության դոկտոր*

## 9. ԱԿՏԻՎ ԵՎ ՊԱՍԻՎ ԲԱՌԱՊԱՇԱՐ

Մեզնից ամեն մեկն ունի իր բառապաշարը, բայց ոչ միանման ու միատարր, ոչ էլ հավասարապես հարուստ: Դա պայմանավորված է հազարումի հանգամանքով. մարդուս կրթության, ընտանեկան ու դպրոցական դաստիարակության աստիճանով, ապրած միջավայրով, մասնագիտության բնույթով և այլն, և այլն:

Ինչ խոսք, կարդացած ու զարգացած մարդու բառապաշարն ավելի հարուստ կլինի:

Բայց ում էլ խոսքը վերաբերի՝ մարդս իրեն ծանոթ բոլոր բառերը չէ, որ հավասարապես լավ գիտե և կարող է հավասար հաջողությամբ գործի դնել առօրյա կյանքում:

Շատ կան բառեր, որ կարդալիս ու լսելիս լավ հասկանում ենք, բայց գործ չենք ածում: Դրանք այն բառերն են, որ տեղ ունեն մեր ոչ թե ակտիվ, այլ պասսիվ բառապաշարում: Ասենք թե կարդում կամ լսում ենք այսպիսի մի արտահայտություն՝ «Բարձունքի վրա փողփողում է ալ դրոշը»: Մենք հիմնականում գիտենք, որ այդ փողփողալ-ը ծածանվելն է, ալ-ը՝ վառ կարմիրն է, բայց մենք այդ բառերը սովորաբար գործ չենք ածում, գոհանում ենք ծածանվել-ով ու կարմիր-ով:

Վերստին կարդանք հայ բանաստեղծության գոհարներից մեկը.

Ես իմ անուշ Հայաստանի արևահամ բարն եմ սիրում,
Մեր հին սազի ողբանվագ, լացակումած լարն եմ սիրում,
Արնանման ծաղիկների ու վարդերի բո՛ւյրը վառման,
Ու Նաիրյան աղջիկների հեզաճկուն պա՛րն եմ սիրում:

Սիրում եմ մեր երկինքը մուգ, ջրերը ջինջ, լիճը լուսե,
Արևն ամռան ու ձմեռվա վիշապաձայն բուքը վսեմ,
Մթում կորած խրճիթների անհյուրընկալ պատերը սև
Ու հնամյա քաղաքների հազարամյա քա՛րն եմ սիրում:

Ուր էլ լինեմ — չե՛մ մոռանա ես ողբաձայն երգերը մեր,
Չե՛մ մոռանա աղոթք դարձած երկաթագիր գրքերը մեր,
Ինչքան էլ սո՛ւր սիրտս խոցեն արյունաքամ վերքերը մեր —
Էլի՛ ես որբ ու արնավառ իմ Հայաստան յա՛րն եմ սիրում:

Իմ կարոտած սրտի համար ո՛չ մի ուրիշ հեքիաթ չկա.
Նարեկացու, Քուչակի պես լուսապսակ ճակատ չկա.
Աշխա՛րհն անցիր, Արարատի նման ճերմակ գագաթ չկա.
Ինչպես անհաս փառքի ճամփա՝ ես իմ Մասիս
սա՛րն եմ սիրում:

Եղիշե Չարենցն այս 16 տողի մեջ խտացրել է մտքի ու հուզմունքի վիթխարի հարստություն, որ ամեն անգամ համակում է մեզ: Հազվագյուտ մի ներշնչանքով Չարենցը կարողացել է իր հայրենասիրական ապրումներին տալ բանաստեղծական կատարյալ ձև, հրաշագործել խոսքի արվեստի մի՛ բացարձակ արժեք: Այս բանաստեղծության մեջ մեզ հիացնում է ամեն ինչ ու նաև՝ խոսքի վարպետությունը: Բայց մեր դասական գրողների գործերը միայն հիանալու և անգիր անելու համար չէ, որ ըստեղծված են. դրանք ոչ միայն կրթում, մշակում, հարստացնում են մեր հուզական և իմացական աշխարհը, այլև լեզու են սովորեցնում. չէ՞ որ բանաստեղծական, առհասարակ գրական, ամեն մեծ արժեք միաժամանակ լեզվի դրսևորման բարձրագույն նմուշ է: Այդպես էլ Չարենցի այս բանաստեղծությունը:

Ասում ենք՝ սովորեցնում, բայց դա ինքն իրեն չի լինում, առողին լսող է պետք, սովորեցնողին սովորող. սովորելու համար որոշ ջանք ու կամք է պետք, ցանկությո՛ւն է պետք:

Չարենցի բանաստեղծության մեջ կա՞ մի դարձվածք, թեկուզ մի հատիկ բառ, որ հասկանալի չլինի: Չկա՛: Գրված գուսանական երգի ավանդական ձևով, հարստացված պոետական բարձր կուլտուրայով, մայրենի լեզվի խորունկ զգացողությամբ՝ այս բանաստեղծության մեջ չկա մի բառ, որ անմատչելի է ընթերցողին: Բայց առօրյա կյանքում, գրելիս թե խոսելիս, մենք գործածո՞ւմ ենք մեզ համար միանգամայն հասկանալի այս բառերը: Ասո՞ւմ ենք՝ արևավառ գինի, լացակումած ձայն, հեզաճկուն աղջիկ, անհյուրընկալ մարդ և այլն:

Չենք ասում կամ ասում ենք շատ հազվադեպ, թեև լավ հասկանում ենք բոլոր բառերն անխտիր:

Պատճառն այն է, որ դրանք դեռևս տեղ չեն գըտել մեր ակտիվ, այսինքն՝ գործունյա բառապաշարում (activus լատիներեն նշանակում է գործունյա): Դրանք դեռևս նստած են մեր պասսիվ բառապաշարում (passivus լատիներեն նշանակում է անգործունյա):

Այստեղ ն ս տ ա ծ բառը կարելի է հասկանալ ոչ թե փոխաբերական, այլ ուղղակի իմաստով. իրոք որ ն ս տ ա ծ են, ասել է թե՝ գտնվում են հանգիստ վիճակում: Մեր խնդիրը պետք է լինի մոտակել դրանց, ստիպել, որ վեր կենան, ակտիվանան, գո՛րծ անեն: Դրա միակ միջոցն այն է, որ այդ բառերը կիրառենք մեր առօրյա խոսակցական ու գրական խոսքի մեջ: Այդպես վարվելով՝ մենք պասսիվ բառապաշարից դրանց կմղենք դեպի մեր ակտիվ բառապաշարը:

Սա թեև աննկատելի, բայց շատ որոշակի ու անընդմեջ մի ընթացք է, որ մեզ ուղեկցում է վաղ մանկությունից մինչև վերջ... Ինչպե՞ս է լինում, որ երեխան մեկ էլ «հանկարծ» սկսում է խոսել: Դա հանկարծ չի լինում: Մինչև խոսելը նա լսում է: Լսում է, լսում ու կամաց-կամաց սկսում է հասկանալ, թե ինչին են ջ ու ր ասում, ինչին՝ գ ն դ ա կ և այսպես շարունակ: Երեխան սկսում է հասկանալ բառերի իմաստը, բայց գործածել դեռևս չի կարող: Ուրիշ խոսքով՝ նա բառապաշար է կուտակում, դեռևս՝ պասսիվ բառապաշար: Օրերից մի օր էլ, ինչպես մեծերին է թվում՝ «հանկարծ» երեխան «լեզու է առնում», ձեռքերը դեպի գնդակը կարկառելիս ասում է՝ գ ն դ ա կ, գ ն դ ա կ ը տ ու ր, առարկաները սկսում է կոչել իրենց անուններով: Ի՞նչ է կատարվում: Կատարվում է այն, որ նրա պասսիվ բառապաշարը դառնում է ակտիվ, գործունյա:

Միշտ նույնն է կատարվում նաև չափահաս մարդու հետ: Լսելիս կամ կարդալիս նա յուրացնում է նորանոր բառեր, ամբարում դրանք իր պասսիվ բառապաշարում և հետո սկսում է գործի դնել: Չպիտի կարծել, թե այս ընթացքը երբևէ կանգ է առնում: Ո՛չ, դա հարատև շարժում է, մինչև կյանքի վերջն էլ մարդ յուրացնում է նորանոր բառեր, անծանոթ հասկացություններ և հետո գործադրում՝ իր ընդունակությունների ու կրթության համեմատ:

Եվ որքան ուժեղ լինի պասսիվ պառապաշարը հարստացնելու, ապա և ակտիվացնելու այդ ընթացքը՝ այնքան լավ: Մի որոշ իմաստով դա կատարվում է ինքնիրեն, մեր կամքից անկախ, ենթագիտակցաբար: Բայց մենք կարող ենք մեր բառապաշարը հարստացնելուն ուժ տալ գիտակցաբար, նպատակ դնելով, ջանքի ու կամքի որոշ լարումով:

Թե ինչպես՝ կասենք հաջորդ զրույցում:



# ՍԵՎԱՆԱ ԼԻՃ

*ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Լույսից ծնված լուսե-աղբյուր,
Վանա լճի հարազատ քույր,
Դու սարերում մեր երկնահաս
Կապույտով լի հսկա մի թաս,
Քեզ արծվաբույն լեռները մեր
Ուսին դրած պահել են վեր,
Պահել են քեզ արևին մոտ,
Որ դու լինես միշտ արևոտ,
Որ երկինքը հնամենի
Քո կապույտից կապույտ առնի,
Որ լույս դառնաս օջախներին,
Որ դառնաս մայր՝ աղբյուրներին,
Որոնց համար հոսում-հոսում
Ու մոր պես քեզ չես ափսոսում,
Քիչն առնում ես, շատը տալիս,
Ա՜խ, այնպես է սիրտս լալիս՝
Պակասում ես, ախր, քիչ-քիչ,
Կապուտաչյա իմ հրա՜շք-լիճ:

Բայց ուր որ է Արփան առած՝
Պիտի ցնծաս դու սրտաբաց,
Պիտի ծփաս հեզ ու նազով,
Նոր երգերով ու երազով:

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Մի խումբ գիտնականներ գործուղվեցին գործարան, որպեսզի ուսումնասիրեն աշխատանքի արտադրողականության բարձրացման հնարավորությունները: Մշակեցին համապատասխան առաջարկություններ և դրանք ներդրեցին արտադրության մեջ, և շուտով արտադրողականությունը բարձրացավ 180 տոկոսով: Գիտնականներից մեկն առաջարկեց աստիճանաբար վերացնել նորարարությունները և ստուգել արդյունքը: Ի զարմանս բոլորի, պարզվեց, որ արտադրողականությունը սկզբնական շրջանից 135 տոկոսով բարձր է: Շուտով

## ԳԻՏՈՒԹՅՈՒՆ ՄԱՐԴԿԱՅԻՆ ՈՒԺԻ ԳԱՂՏՆԻՔՆԵՐԻ ՄԱՍԻՆ

ԳԷՎՈՐԳ ԽՐԼՈՊՅԱՆ

բացահայտվեց գաղտնիքը, որ մարդկանց ներաշխարհում առաջացած նոր վիճակն էր դա կապված: Բանվորների մոտ առաջացել էր մարդկային ուժերը խթանող, մոբիլիզացնող փոփոխություն: Նրանք խիստ շոյված էին զգում, որ գիտնականները լրջորեն զբաղվում են իրենցով: Գիտության և հասարակության հատուկ ուշադրության կենտրոնում գտնվելու զգացումը ավելի էր ուժեղացրել ինքնահսկման կարողությունն ու արդյունավետ, որակով աշխատելու ձգտումը: Ուսումնասիրության արդյունքի գիտական և գործնական նշանակության գիտակցումը բարձրացրել էր պատասխանատվության զգացումը: Այս բոլորը նրանց մղել էր դեպի արտադրողականության բարձրացումը՝ նույնիսկ աշխատանքի պայման-

# Մարկոս-Կիրակոսի

*ԶՈՐԱՅՐ ԽԱԼԱՓՅԱՆ*

Մեծ ճանապարհորդներն, ինչպես հայտնի է, սիրում են պատմել տեսածի ու լսածի մասին, և նրանք դա անում են առանց սպասելու, որ այդ մասին նրանց խնդրեն: Սակայն դա չի նշանակում, թե նրանց բերանները առհասարակ չեն փակվում կամ նրանք պատմում են առանց դադարի, անկախ լսող կա՞, թե՞ ոչ: Նախ, անպայման լսող պետք է, և ապա նրանք լավ լռել գիտեն և նրանց լռությունը երբեմն այնքան խորիմաստ ու անբացատրելի է լինում, որ մարդ կարող է ժամերով մտածել ու այնպես էլ չհասկանալ, թե ինչու նրանք մի երկու րոպե լուռ մնացին:

Չափազանց խորհրդավոր է մեծ ճանապարհորդների լռությունը, եթե նրանք, իհարկե, առհասարակ լռում են: Այդ հազվագյուտ պահերին նրանք ոչ թե մի պահ իրենք իրենց հարց են տալիս, թե այս ինչեր եմ դուրս տալիս, նրանց այդ բանն ամենևին չի հետաքրքրում, նրանք այդ միջոցին իրենք իրենց ասում են՝ շատ հեռուները չգնամ, այլապես իմ պատմության՛ ողջ հավաստիությունը կասկածի տակ կդնեմ:

Այդ կողմից մեր մեծ, անվանի, աշխարհահռչակ, մայր ցամաքների գիտակ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսը կորցնելու ոչինչ չունի, որովհետև նա իր պատմություններով այնքան հեռուներն է գնացել, որ ինչպես ասում են՝.դրանից այն կողմ գնալու տեղ չկա:

Նրա այդ կարգի պատմություններից մեկը մեկ տանում է այնքան հեռավոր մի երկիր, որ թվում է անգամ դա մեր մոլորակի վրա չէ, այլ մեկ ուրիշ: Թերևս դա մեկ այլ մայր ցամաք է եղել և ոտք դնելով օտար հողին՝ մեծ ճանապարհորդը կռահել է դա, սակայն նա կտրականապես վանել է այդ նոր մայր ցամաքը իր անունով կոչելու միտքը: Այսպիսով, մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսի ծայրահեղ ու անտեղի համեստության պատճառով մարդկությունը զրկվել է մի մայր ցամաք ևս ունենալու հնարավորությունից, մանավանդ այժմ այնքա՜ն կարիք կա նոր մայր ցամաքների...

Այս նոր մայր ցամաքը ոտք դնելով՝ փաստորեն սկսվում է մեծահռչակ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսի անպարտախը, այսինքն ճանապարհորդությունը դեպի անծանոթ երկրի խորքերը:

Դարչ ընդգծված պետական սահմանները ցույց էին տալիս, պատմում էր Մարկոս-Կիրակոսը, որ անհայտ մայր ցամաքը նույնպես բաժանված է տերությունների և սահմանները խստիվ հսկողության տակ են: Դեռևս շատ հեռուներից սահմանապահները հեռադիտակներով ուսումնասիրում էին ճանապարհները և այդ ճանապարհին հայտնված մեծանուն ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսի տեղաշարժերը: Հենց սահմանը խախտելու առաջին քայլը չարած՝ հեռուներից հանկարծ սուրալով դեպի մեծ ճանապարհորդն է թռչում մի արկ ու պայթում, բարեբախտաբար, նրանից մի քանի քայլ այն կողմ: Բեկորները ցրվում են աջ ու ձախ, առանց նրան վնաս պատճառելու: Սակայն բազմահմուտ ճանապարհորդը կռահելով, որ անծանոթ երկրի սահմանապահները երկրորդ արկով այլևս չեն վրիպի՝ իրեն նետում է դեպի մոտակա փոսը, բայց դեռ փոսը չնետված՝ հանկարծ պգում է, որ արկի բեկորները տարօրինակ ու հաճելի բուրմունք են արձակում: Աչքի պոչով նայում է այդ բեկորներին և ի՞նչ տեսնի. դա մի հրաշալիորեն փաթեթավորված կոնֆետ է: Քիչ այն կողմ՝ մեկ այլ կոնֆետ: Անմիջապես կոնֆետները հավաքելով ու բերանը նետելով՝

# «Անաբասիս»

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ



աշխարհահռչակ ճանապարհորդը իր կամքից անկախ սահմանի խախտում կատարելով՝ ոտք է դնում անծանոթ երկրի տարածքը:

Քիչ անց նրա առջև պայթում է երկրորդ արկը՝ կրկին չորս կողմ ցրելով կոնֆետներ, անուշահոտ բլիթներ, կարկանդակներ ու էլ ինչ ասես: Սրանք ևս, բնականաբար, հավաքելով ու խփշտելով՝ մեծահռչակ ճանապարհորդը ավելի է խորանում դեպի անծանոթ երկրի խորքերը... Նա, իհարկե, հասկանում է, որ անհրաժեշտ է գրի առնել այդ ճանապարհորդության մանրամասնությունները, որպեսզի ստացվի մի նոր «Անաբասիս» և մարդկությունն ունենա, հանձին իր՝ մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսի, մի երկրորդ հին հունացի պատմաբան ու ճանապարհորդ Քսենոփոն: Ինչ խոսք, երկու Քսենոփոնը լավ է, քան մեկը: Նույնը կարելի է ասել Նյուտոնի, Մագելանի, Կոլումբոսի և մյուս շատ ու քիչ նշանավոր պատմական անձանց մասին: Մասնավորապես, եթե, ասենք, ունենայինք երկու Կոլումբոս ու նրանցից ամեն մեկը մի Ամերիկա հայտնագործեր, այսօր մեկի փոխարեն երկու Ամերիկա կունենայինք:

Բայց չշեղվենք... Մենք Մարկոս-Կիրակոսին թողեցինք անծանոթ երկրի սահմանագլխին, ուր նրա վրա անտեսանելի սահմանապահները հեռահար թնդանոթներով սկսեցին կրակել, և մենք տեսանք, թե որքան տարօրինակ արկեր էին պայթում մեծ ճանապարհորդի շուրջը: Մենք տեսանք, որ այդ արկերից չորս կողմ քաղցրավենիքներ ու թխվածքներ էին սփռվում և նա հավաքում ու ախորժակով ուտում էր: Այսինքն, մենք դա չտեսանք, իհարկե, մենք պարզապես հավատացինք նրա ասածին: Նա այդ քաղցրավենիքն այնքան կլանեց, որ շուտով ծարավ զգաց և հենց այդ ժամանակ, ինչպես հետագայում ժպտալով պատմում էր նա, նրա առջև ցայտեցին գույնզգույն շատրվաններ, որոնք նույնպես անուշ բուրում էին:

Նա իր ճամփորդական թասը պահեց այդ շատրվաններից մեկի տակ ու լցնելով՝ գլխին քաշեց: Պարզվեց, որ դա հասարակ ջուր չէ, այլ անու-

ների փոխթափանցման դեպքում: Կարճ ժամանակ անց գիտնականները նկատեցին, որ արտադրողականությունն սկսել է բարձրանալ այլ արտադրամասերում, այնտեղ, որտեղ չէին ներդրվել նորարարական առաջարկությունները: Սույն երևույթի պատճառը հոգեբանական վարակի օրենքի մեջ է: Նման պայմաններում և իրար հետ հաղորդակցություն ունեցող մարդկային խմբերը խիստ զգայուն են իրար նկատմամբ: Մեկի մեջ առաջացած սոցիալ-հոգեբանական և սոցիոլոգիական փոփոխությունները կարճ ժամանակում տեղափոխվում են նաև մյուս խմբի միջավայր: Այս հիմք է հանդիսանում պրոլետարական, կուսակցական, երիտասարդական և պիոներական խմբերի, կազմակերպությունների համերաշխության:

Եթե դու լավ հարաբերությունների մեջ ես Անահիտի հետ, ապա նրա մտերիմների, նրան հուզող հարցերի ու նույնիսկ նրա իրերի նկատմամբ հատուկ լավ վերաբերմունք կունենաս: Եթե սիրում ես տվյալ ուսուցչին, ապա կսիրես նաև նրա առարկան կամ անպայման լավ կպատրաստվես նրա դասերին: Հետևաբար տվյալ մարդկային հարաբերությունների միջոցով հնարավոր է ազդել ոչ միայն մարդկային մեծ խմբերի, այլ նաև իրերի և իրերի ու մարդկանց հարաբերությունների համակարգի վրա: Այս նշանակում է, որ խիստ մեծանում է սոցիոլոգիայի և սոցիալական հոգեբանության ներգործության շրջանակները:

Մարդկային տարբեր հարաբերությունները ունեն տարբեր խորք: Օրինակ, որոշակի հարաբերություն գոյություն ունի վաճառողի և գնորդի միջև: Ուսուցիչ-աշակերտ հարաբերությունն իր բնույթով շատ ավելի խորն է: Աշակերտը որոնում է, փորձում է ինքն իրեն և շրջապատի մարդկանց

ճանաչել, շրջապատը հասկանալ: Ուսուցիչից նա ձգտում է ստանալ իր հարցերի պատասխանը: Ուսուցիչը օգնում է նրան, որպեսզի կյանքում նա գտնի իր տեղը: Նա թափանցում է սանի ներաշխարհը և այնտեղ ստեղծում մի հոյակապ ներաշխարհ-մոզաիկա, խճանկարներ, որին մենք սովորաբար անվանում ենք՝ անհատականություն: Այս պատճառով էլ ինչքան մտերիմ ու ընկերական է ուսուցչի ու աշակերտի կապը, այնքան բարենպաստ է գործունեության մթնոլորտը: Ինչպես որ բժիշկի խորաթափանցությունից և հոգատարությունից կախված է բուժման ելքը, այնպես էլ ուսուցչի սիրո, գուրգուրանքի և ներթափանցման կարողությունը կանխորոշում է դաստիարակության ընթացքը:

Յուրաքանչյուրն իր բնավորության ուրույն գծերն ունի: Մեկին մյուսի բնավորության այս գիծն է դուր գալիս, մի ուրիշին՝ այն: Ոչ մեկը մյուսին հարյուր տոկոսով դուր գալ չի կարող: Ապա ի՞նչ պետք է անել, որ մարդկանց հարաբերությունները բնականոն լինեն, որ պիոներական օղակում, ջոկատում, դասարանում համերաշխություն, միասնություն ու փոխըմբռնում լինի: Սոցիալ-հոգեբանությունն ու սոցիոլոգիան այսպիսի դեպքերում առաջարկում են կիրառել ակկոմոդացիայի սկզբունքը: Այս նշանակում է, որ անհրաժեշտ է մարդկանց մեջ բացահայտել այնպիսի կողմեր, որոնք ընդունելի և ընդհանուր լինեն բոլորի համար, և անտեսել իրարամերժ, անհամատեղելի, դժվարություններ առաջացնող կողմերը: Այդ դեպքում մարդիկ սկսում են իրար ավելի լավ հասկանալ:

Մարդկային հարաբերությունները հանդիսանում են նաև մարդկային վարքը հսկող և դե-

շահամ օշարակ և դա ուներ կապտավուն գույն, ինչպես «Թարխունի» լիմոնադը: Մյուս շատրվանը, նարնջագույնը, հենց նարնջահյութից էր, իսկ երրորդը, որ դեղնավուն էր, ուներ «Բուրումնալի» լիմոնադի համ:

Լավ ուտելուց և խմելուց հետո նա հանկարծ տեսավ, որ ամպերի վրա դեպի իրեն է սլանում ինքնաշարժ մի բազմոց, ի դեպ՝ կարմիր գույնի: Առանց ինքն իրեն այդ հրաշքի համար հաշիվ տալու՝ հոգնած ճանապարհորդը մեկնվում է բազմոցին ու աչքերը փակում: Աչքերը փակած-չփակած, վերևից պարաշյուտաձև մի ամպհովանի է իջնում և ստվերի տակ առնում նրան: Պարզամիտ մեկ ուրիշը, իհարկե, կապշեր և այս բոլոր հրաշալիքները կմեկնաբաներ ըստ տատից լսած հեքիաթների: Սակայն մեծահամբավ ու բազմահմուտ ճանապարհորդն ընդունում էր այդ ամենը խորին անվրդովությամբ ու երբ հանգստի պահին հնչեց հոգեթով մի երաժշտություն՝ միայն ժպտաց և թեթևակի գլխով արեց, իբր՝ այդպես էլ գիտեի, այս ամենն առանց երաժշտության չէր լինելու:

Կարող եք հավատալ, կարող եք չհավատալ, բայց նա ընկել էր մի երկիր, ուր պետական կարգը տարօրինակության չափ չէր համընկնում մեզ հայտնի բոլոր կարգերին:

Հետագայում նա, իհարկե, ուսումնասիրեց այդ երկիրը՝ աշխարհագրական, ֆիզիկական, քաղաքական, տնտեսական, գյուղատնտեսական, բժշկասանիտարական, պտղաբանջարաբուծական և այլ բազմաթիվ կողմերով: Սա կոչվում էր Անուշ երկիր, հարևան երկիրը՝ Քաղցր երկիր, մյուսը՝ Քնքուշ, չորրորդը՝ Չքնաղ և այլն, բոլորն էլ հրապուրիչ անուններ ունեին:

Շատ մանրամասն է պատմում մեծ ճանապարհորդն այդ անհայտ մայր ցամաքի պետությունների մասին: Քանի որ պետությունն առանց բանակի չի լինում, ասենք, որ սույն պետությունները նույնպես բանակներ ունեին, այդ բանակներն անշուշտ ունեին սերժանտներ, կապիտաններ, գնդապետներ, մանավանդ գեներալներ: Այստեղ նույնպես արական սեռի քաղաքացիները պարտադիր զինվորական ծառայության էին կանչվում, սակայն այս բանակները վարժվում էին ոչ թե պատերազմ մղելու, այլ հակապատերազմի համար: Այո, այդքան տարօրինակ բարքեր ուներ յոթներորդ մայր ցամաքը:

Այստեղ զինվորների ձեռքը ոչ թե զենք են տալիս՝ իր նմանին սպանելու համար, այլ հակառակը: Ծառայության ընթացքում նրան սովորեցնում էին, թե ինչպես հրապուրելով թշնամու զորքը դեպի երկրի խորքերը գրավել: Նրանց հաջողությունը ոչ թե հարձակումից, այլ նահանջից էր լինում և փառաբանվում են ոչ թե այն գեներալները, որոնք փայլուն ճակատամարտեր են տալիս ու հմտորեն հարձակվում թշնամու վրա, այլ լրիվ հակառակը՝ փառաբանվում են այն գեներալները, որոնք նահանջում են թշնամուց ավելի լավ և ճարպկորեն խուսափում են ամեն մի ընդհարումից:

Նահանջի ժամանակ երկու կողմի բանակները բոլոր միջոցներով ցանկանում են ուշադրություն գրավելով, հրապուրելով, հակառակորդին տանել դեպի սեփական երկրի սահմաններից ներս: Այս սեփական երկրի բարիքները նրան տրամադրել ու տեսարժան վայրերով գայթակղեցնել, այնուհետև ազգային կերակրատեսակներով, խորտիկներով նրան հյուրասիրելով՝ ներսում պահել: Գայթակղման բոլոր միջոցները կան այդ երկրների զինանոցներում:

Այդ զորքերի գեներալները մարդասիրության գեներալներ են, այդպես էլ դասակարգվում են՝ «Առաջին կարգի մարդասիրության գեներալ» և այլն: Իսկ գերագույն զինվորական աստիճանը կոչվում է «Մարդկու-

ջյան ինքնամոռաց բարերարության գեներալ»: Դրանք մարդասիրական ճակատամարտերի մեծ գիտակներ են և իրագործելու փորձառու կորավարներ: «Առաջին կարգի մարդասեր գեներալը», օրինակ, կարող է մի ժամում գրկախառնվել ու համբուրել հակառակորդի հազարից ավելի զինվորի հետ, նույնքան ժամանակում հակառակորդին վերջնականապես սիրաշահելու համար նա կարող է տասից-տասնհինգ ազգային ամենահետաքրքիր հեքիաթները պատմել, ապա պարել ու ցուցադրել սեփական ժողովրդի կուլտուրական պարարվեստը: Նույնը, բայց, իհարկե, անհամեմատ նվազ հաջողությամբ, անում է ամեն մի շարքային զինվոր: Դա ևս հասկանալի է, զինվորը հենց նրա համար է զինվոր, որ դեռևս շատ ճանապարհ ունի կտրելու, մինչև գեներալ դառնալը:

Մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսը իր հռչակավոր «Անաբասիսում» գիտականորեն կանխատեսում է, որ միջցամաքային ծեռահար հրթիռներ ստեղծելով, այդ անհայտ մայր ցամաքի պետությունները կաշխատեն մյուս մայր ցամաքների ժողովուրդներին ևս նվաճել ու ստեղծել իրենց Անկեղծ Մարդասիրական Աշխարհապետությունը:

Մենք արդեն տեսանք, թե ինչպես կարող է դա սկսվել: Ճանապարհով գնալիս հանկարծ մեր կողքին կարող է ընկնել հեռավոր մայր ցամաքից արձակված հրթիռը և պայթելով չորս կողմ շաղ տալ կոնֆետներ, բլիթներ, կարկանդակներ և էլ ինչ ասես: Կամ կարող է դա թեթև արդյունաբերական հրթիռ լինել, պայթելով մեր ճանապարհին սփռել նորագույն ձայնագրիչներ, տրանզիստորային ընդունիչներ, սվիտերներ, նախճապակեղեն և այլ գրավիչ մանրուքներ:

Մենք չպետք է խուլույն վազենք դեպի անհայտ մայր ցամաքը, մենք արդեն գիտենք, թե դրանից ինչ դուրս կգա: Մեկ այնտեղ անկեղծորեն հյուրասիրելով, գուրգուրելով, ազգային կերակրատեսակներով ու խորտիկներով գայթակղելով, տեսարժան վայրերը ցուցադրելով, երգելով, պարելով և այլ հաճույքներ պատճառելով, կաշխատեն պարտության մատնել ու տանել իրենց հաղթանակը:

Ահա ինչ վտանգից է մեզ նախազգուշացնում մեծ ճանապարհորդ Մարկոս-Կիրակոսը իր «Անաբասիսով»:



կավարող գործոններից: Եթե պատանին գտնվում է ծանոթ միջավայրում, նա ինքնաբուխորեն, նույնիսկ մեքենաբար, ձգտում է վարվել խիստ վայելուչ, պահպանել քաղաքավարության ու բարոյականություն արտահայտող նորմերն ու օրենքները: Նա այդպես վարվում է ոչ միայն օրինապահության գիտակցությունից, այլ նաև ինքն իրեն, շրջապատին հարգելու և իր ու միջավայրի հարաբերությունը հաշվի առնելով: Տարեց մեկն ասում էր. «Երբ մեր թաղամասում եմ, խիստ դժվարանում եմ տրամվայ նստել ընթացքից: Ամաչում եմ ծանոթներից»: Նույնը նկատում ենք նաև հանցագործությունների պատճառներն ուսումնասիրելիս: Գյուղերում անհամեմատ շատ քիչ օրինազանցություններ ու հանցագործություններ են տեղի ունենում, քան քաղաքներում: Այնտեղ յուրաքանչյուրը ճանաչում է մյուսին, մարդկային հարաբերությունները սերտ են: Այս պատճառով էլ ամեն մեկը զգուշում է իրեն, անհարմար է զգում օրինազանցություններ կատարել: Ընտանիքը նույնպես հանցագործությունը զսպող դեր ունի:

Յուրաքանչյուրը մեզնից որոշակի խմբի անդամ է: Նա որոշակի ընտանիքի, դասարանի, աշխատանքային կոլեկտիվի, դասակարգի, հասարակական կազմակերպության, ազգի, մասնագիտական խմբի անդամ է: Նրա բոլոր հարաբերություններում երևում է իր խմբային պատկանելիության ազդեցությունը: Նա իր գործունեությամբ հանդես է գալիս որպես այդ խմբերի ներկայացուցիչ: Նա իր արարքներով ու գործերով օգնում կամ վնասում է այդ խմբերին ու դրանց անդամներին: Յուրաքան- [illegible]

ընտանիքի, դաստիարակչական կազմակերպության մասին: Ինչպես մարդ իրեն զգա ընտանիքի, դասարանի, դպրոցի ներկայացուցիչ, այնքան նա ավելի նախաձեռնողաբար կլինի դեպի իր խմբի, կոլեկտիվի պատիվը: Այդ զգացումը կոչվում է նաև կոլեկտիվիզմ, համերաշխության ոգի, ընկերասիրություն:

Գործից դուրս ու անկախ մարդ չկա: Յուրաքանչյուր գործունեություն ունի իր դրդապատճառները: Դրդապատճառը մարդու գործին ակտիվություն և որոշակի ուղղվածություն է տալիս: Սոցիալական հոգեբանության ու սոցիոլոգիական դրդապատճառների ուսումնասիրությունը համարում են խիստ կարևոր՝ մարդու ներաշխարհի ու հետաքրքրությունների ուժն ու նշանակությունը որոշելու համար: Եթե ընկերդ մի սխալ է կատարել, դու կարող ես քննադատել նրան օգնելու նպատակով կամ վնասելու, կամ քո առավելությունը ցուցադրելու և կամ վրեժխնդիր լինելու համար: Իսկական քննադատությունը համարվում է առաջինը: Մյուսները կարող են նույնիսկ վնասակար լինել:

Այսպես ուրեմն, մարդկային ֆիզիկական, բանական-իմացական և սոցիալ-հոգեբանական ուժի գաղտնիքները բացահայտող նոր գիտություններ են հանդես եկել, որոնք աշխատանքային բոլոր ոլորտներում պիտանի են: Այն կարևոր է նաև պիոներական դրուժինայի և կոմերիտական կազմակերպության աշխատանքները բարելավելու, դժվարությունները ավելի հեշտությամբ ու արմատապես հաղթահարելու համար: Սոցիալական հոգեբանությունն ու սոցիոլոգիան միևնույն ժամանակ ամենաէժան գիտություններն են, քանի որ մեծ արդյունք են տալիս առանց նյութական միջոցների զգալի ներդրումների, ծախսերի:

# ԿԱՐԵՎՈՐ ԱՅՑԵԼՈՒԹՅՈՒՆ

*Բ. ԲՐԻԿԻՐ, Ա. ՎԻՇՆԵՎՍԿԻ*

Կոստյա Պյատկինն ամբողջ դասարանին ետ էր պահում. «երկուսնե՛ր», ուշացումնե՛ր, ծխախոտը բռի մեջ թաքցրած ծխե՜լ... Ինչքա՞ն կարելի էր համբերել: Եվ ահա դասարանի ակտիվիստուհիներ՝ Լյուդոչկան ու Ժենյուչկան որոշեցին դասարանի անունից ներկայանալ Կոստյայի ծնողներին և բաց անել նրանց աչքերը իրենց որդու դպրոցական կյանքի վերաբերյալ:

— Ուրեմն այսպես. մենք միասին կասենք «բարև ձեզ», հետո կխոսեմ առաջ ես,— ասաց Լյուդան:

— Լավ, բայց ես վարքի մասին կխոսեմ, դու՝ թվանշանների,— առաջարկեց Ժենյան:

— Անխիղճ ես, Ժե՛նյա, ամենահետաքրքիրը քեզ ես վերցնում:

— Դե լավ, դու վարքի մասին խոսիր, իսկ ես՝ թվանշանների: Բայց ոչինչ չմոռանաս, և՛ այն, թե ինչպես լուսամուտից թռավ, և՛ այն, թե ինչպես է ծուխ հանում ականջներից...

— Իսկ դու կպատմես, որ ուրիշից արտագրում է, բոլոր «երկուսների» մասին կասես, նաև այն, որ մաթեմատիկայի դասին երգում է, երգեցողության ժամին բազմապատկման աղյուսակը արտասանում:

— Լա՛վ, մնացածը տեղում կորոշենք...

Աղջիկները տրամադրված էին շատ վճռական. չէին հեռանա նրանց տանից, մինչև Պյատկինի ծնողներին չհասկացնեն, որ հարկավոր է լրջորեն զբաղվել տղայի դաստիարակությամբ:

Դուռը տատիկը բացեց:

— Բարև՛ ձեզ,— միաձայն ասացին աղջիկները,— մենք ձեր Կոստյայի համադասարանցիներն ենք: Մենք եկել ենք ասելու...

— Կոստյայի համադասարանցինե՞րը,— ուրախացավ տատիկը,— ա՜յ դա սյուրպրիզ է, համեցե՛ք, աղջիկնե՛ր, համեցե՛ք, անուշիկնե՛րս:

Նախասենյակ եկավ մայրը:

— Տես, թե ովքե՛ր են եկել, Կոստյայի դասընկերուհիներն են:

— Ի՜նչ սիրունիկ աղջիկներ են,— ասաց մայրը:

— Մենք միայն մի վայրկյանով,— ասաց Լյուդան,— մենք եկել ենք ասելու...

— Իսկ ես ձեզ չեմ ուզում լսել,— շինծու խստությամբ ասաց տատը,— անմիջապես սենյա՛կ մտեք, մուրաբայով թեյ ենք խմելու:

— Մուրաբայով թեյ չենք ուզում,— ասաց Ժենյան,— մենք...

— Աղջիկնե՛ր, ի՞նչ է, դուք մուրաբա չե՞ք սիրում, սերկևիլը ընկույզի հետ,— զարմացավ տատը:

— Սիրում են, սիրում են,— ասաց մայրը և աղջիկներին քշեց սենյակ:

Աղջիկները նստեցին սեղանի շուրջը և Լյուդան սկսեց.

— Մենք եկել ենք ասելու...

Բայց տատիկն ընդհատեց, տալով նրանց մեկական կարմիր խնձոր:

— Կերե՛ք, ջանիկնե՛րս, Կոստյայի քեռի՛ն երեկ է Ալմա-Աթայից բերել,— ասաց տատը:

Մինչև աղջիկները խնձորը կուտեին, սեղանի վրա եկավ մուրաբան, տանը պատրաստած թխվածք և մեծ ինքնաեռը:

— Շնորհակալություն խնձորի համար, բայց մենք եկել ենք ասելու,— սկսեց Ժենյան:

— Թեյ խմեք, սառում է... դուք փորձե՛ք, փորձե՛ք, այստեղ երեք տեսակ է խառը, կարող եմ հետո պատրաստման եղանակն ասել, որ ձեր մայրիկներն էլ պատրաստեն:



Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Աղջիկներն սկսեցին խմել թեյն ու ուտել մուրաբան՝ հատուկ փոքրիկ պնակներից: Մուրաբան քաղցր էր, թեյը՝ տաք, բուրումնավետ, աղջիկները մեկ էլ զգացին իրենց տաք և ուրախ:

— Մենք եկել ենք ասելու, որ ձեր Կոստյան,— սկսեց Լյուդան:

— Կոստյան ի՞նչ,— հարցրեց մայրը սթափվելով:

— Դու՛ ասա, Ժե՛նյա,— շշնջաց Լյուդան ընկերուհուն,— դու պետք է վարքի մասին ասեիր:

— Նախ թվանշանների մասին,— շշնջաց Լյուդան:

— Մենք եկել ենք ասելու, որ ձեր Կոստյան սովորում է...— Ժենյան սկսեց կմկմալ:

— Ի՞նչ, ի՞նչ...— մայրը սպասողական նայեց նրանց:

— ... Ընդհանուր առմամբ վատ չէ,— դժվարությամբ արտաբերեց Ժենյան:

— Կարելի է նույնիսկ ասել լավ է,— ինքնավստահ ասաց Լյուդան:

— Գերազանց է սովորում ձեր Կոստյան,— ասաց Ժենյան, ևս երեք գդալ մուրաբա վերցնելով:

— Նա ետ մնացողներին օգնում է,— ասաց Լյուդան և վերցրեց թխվածքի ամենամեծ կտորը:

— Ուրեմն նա լա՞վ է սովորում,— հարցրեց մայրը:

— Գերազանց,— միաձայն վրա բերին աղջիկները:

— Իսկ ինչպե՞ս է իրեն պահում,— հարցրեց տատը:

— Վարքի մասին էլ հենց մենք ուզում էինք ձեզ ասել...

— Կոնֆե՛տ, կոնֆե՛տ վերցրեք,— հանկարծ հիշեց մայրը,— դե հապա շուտ, դուք սրանից չեք կերել՝ «սև սալորը շոկոլադի մեջ»: Ծանրոց ենք ստացել Օդեսայից:

Աղջիկները մեկական կոնֆետ առան ու շփոթված հայացքներ փոխանակելով, սկսեցին ուտել:

— Ձեր որդու՝ Կոստյայի վարքը,— հաստատապես ասաց Լյուդան,— ... վարքը լավ է:

— Սոսկալի լավ,— հաստատեց Ժենյան, վերցնելով հերթական կոնֆետը,— ուղղակի հիանալի, ամենևին չի ծխում, չնայած որոշ տղաներ...

— Ի՞նչ սարսափելի բան,— տատը ձեռքերը իրար պարկեց,— իսկ դուք կերե՛ք, կերե՛ք:

Երբ ամեն ինչ կերան, թեյն էլ խմեցին և անվուգական Կոստյա Պյատկինի մասին էլ ասացին պրծան, աղջիկները ելան սեղանից:

— Շնորհակալություն հյուրասիրության համար,— ասացին նրանք:

— Ի՞նչ եք ասում, ի՞նչ եք ասում,— վրա բերեց տատը, հանձնելով նրանց իրենց վերարկուները,— նորի՞ց համեցեք, միշտ ուրախ կլինենք...

— Դու ինչո՞ւ ճշմարտությունը չասացիր,— արդեն սանդուղքների վրա հարցրեց Լյուդան Ժենյային:

— Առաջ դու ասացիր, որ Կոստյան լավ է սովորում:

— Իսկ դու էլ հաստատեցիր:

— Իսկ դու...

Այդ պահին մուտքից ներս մտավ Կոստյայի հայրը:

— Արի հիմա հորն ասենք ճշմարտությունը,— շշնջաց Լյուդան:

— Արի՛:

Աղջիկները վճռական մոտեցան հորը:

— Մենք Կոստյայի համադասարանցիներն ենք, ուզում ենք ձեզ ասել...

— Կոստյայի համադասարանցինե՞րը,— բացականչեց հայրը,— ինչպիսի՛ զուգադիպություն, ինձ այսօր ամերիկյան երկու տուփ ծամոն են նվիրել, մտածում էի ու՞մ տալ... վերցրեք, Կոստյան սրանցից շատ ունի:

Փողոցում ընկերուհիները այլևս չէին վիճում: Լուռ քայլում էին, ծնոտները սևեռուն շարժելով:



Երեխա ժամանակս ճանաչում էի մի նկարչի, որին մենք՝ տղաներս, ուղղակի Վասյա քեռի էինք անվանում: Նա ապրում էր մեր շենքում, և ես հաճախ էի տեսնում, թե ինչպես է նա նկարչատուփն ու փոքրիկ նկարակալը թևի տակ անցնում բակով: Նկարակալը նման էր եռոտանու, որպիսին գործ են ածում լուսանկարիչները: Երբ Վասյա քեռին քայլում էր այդպես սպառազինված, նրա երկար կորամեջք կերպարանքը վրան խաչ քաշած հարցական նշան էր հիշեցնում:

Մի անգամ ես նրան պատահեցի Ստրելեցկայա փողոցում: Նա իր եռոտանին (կամ «ոտքերը» ինչպես անվանում էր ինքը՝ Վասյա քեռին) դրել էր խաչմերուկի անկյունում: Բայց նկարում էր ոչ թե լայն Ստրելեցկայան, այլ այն հատող, դեպի գետն իջնող փողոցը: Ես նայեցի կտավին. ցածրիկ տները սանդղաձև իջնում էին մինչև գետափ, ահա փոքրիկ եկեղեցին, ափին ամրացված նավակները:

— Բարև՛ ձեզ, Վա՛սյա քեռի,— ասացի ես.— նկարո՞ւմ եք:

— Նկարում ենք:— Մի փոքրիկ տախտակի վրա նա սպիտակ ու կապույտ ներկերն էր խառնում:

— Նման է,— մի փոքր մտածելուց հետո ասացի ես:

— Իսկապե՞ս... Համա թե ուրախացրիր:

ՕԼԵԳ ՏԻԽՈՄԻՐՈՎ




Ես չհասկացա, նա իսկապե՞ս ուրախացավ, թե՞ ոչ: Մի քիչ էլ նայեցի ու նկատեցի.

— Վա՛սյա քեռի, իսկ այստեղ դուք մոռացել եք նշանը նկարել:

— Ի՞նչ նշան,— հայացքը սևեռեց Վասյա քեռին:

— Հրե՞ն, լարից կախվածը. «Բեռնատար մեքենաների երթևեկությունն արգելված է»:

— Ախ, ա՞յդ...

— Հենց դա: Լարը նկարել եք, իսկ նշանը մոռացել:

Վասյա քեռին մի քանի անգամ նայեց նշանին ու ասաց.

— Չէ՛, այնուամենայնիվ, առանց նշանի յոլա կգնանք:

— Ինչո՞ւ:

— Չի հարմարվում այստեղ քո այդ նշանը: Գույնը լավ չի, հասկանո՞ւմ ես:

— Հա՜-ա,— ասացի ես:

Բայց չկարողացա հասկանալ: Այսինքն, ինչպե՞ս չի հարմարվում: Եվ ինչպե՞ս թե «գույնը լավ չի»: Կարմիր է ու դեղին: Հոյակապ գույն:

Մյուս անգամ Վասյա քեռուն ես հանդիպեցի քաղաքային այգում: Նկարակալի վրա էլի կտավ քաշած մի փոքրիկ շրջանակ էր ամրացված: Ես կանգնեցի Վասյա քեռու թիկունքում ու կողքից մի հայացք գցեցի: Կտավի վրա ծառուղի էր. սաղարթախիտ ծփիների կատարները կարծես միահյուսվել էին ու ձգվում էին ճանապարհի երկայնքով հեռու, շատ հեռու, և նույնիսկ չէր էլ երևում, թե որտեղ են նրանք վերջանում:

Վասյա քեռին նորից զգաց, որ թիկունքում մարդ կա, ետ նայեց:

— Այդ դո՞ւ ես,— ասաց նա, և մի փոքր լռելուց հետո հարցրեց.— Հը՞, ո՞նց է, նմա՞ն է:

— Նման է,— ասացի, և որպեսզի գովեմ նրան, ավելացրի.— Ի՜սկը լուսանկարի պես, ամեն բան ճիշտ է:

— Մի՞թե:— Վասյա քեռին թեթևակի քմծիծաղեց ու էլ ոչինչ չասաց:

Իսկ ես սկսեցի համեմատել նկարն ու այն տեղը, ուր շարունակ նայում էր Վասյա քեռին:

Ո՛չ, նկարի վրա ստվերներն ավելի թանձր էին, ծառուղին էլ թվում էր խորհրդավոր և նույնիսկ տագնապալի: «Սա ի՞նչ բան է,— չէի հասկանում ես:— Ամեն բան ճշգրիտ է նկարված»: Եվ միևնույն ժամանակ նկարում ուրույն մի աշխարհ կար: Այն ծառուղին, ուր շարունակ նայում էր Վասյա քեռին, ինձ քաջ ծանոթ էր, քանի՜ անգամ եմ վազել ես նրա երկայնքով, իսկ նկարում տեսնում էի նույն ծառուղին, բայց այնտեղ արդեն մի նոր, մի անսպասելի բան կար:

Մի անգամ աշնանը ընկերոջս՝ Գլեբի հետ զբոսնում էի քաղաքամերձ այգում: Այգին անտառոտ էր,

իսկ նրա եզրով մի խոր զառիվայր ձորափ էր ձգվում: Երբեմն ձորափի եզրը սուր ելուստի ձևով կախվում էր անդունդի վրա: Նրանցից մեկի վրա, ծառի մոտ մենք տեսանք Վասյա քեռուն: Նրա կողքին ոտքերը չռած կանգնած էր եռոտանին:

Վասյա քեռին՝ ներկապնակը ձեռքին ներկ էր խառնում: Որոշ ժամանակ ներկերի հետ խորհրդավոր գործողություններ կատարելուց հետո, նա վրձնահարված էր դնում նկարին, հետո, ձորակից այն կողմ նայելով, արագ վերցնում էր տյուբիկները, սեղմելով ներկեր հանում նրանցից ու նորից սկսում եռանդով խառնել:

Վասյա քեռին մեզ չէր տեսնում:

— Մոտենանք,— ասացի ես:

— Չե՞նք խանգարի:

— Ինչո՞ւ պիտի խանգարենք:

— Տես, ինչպես է շտապում:

— Ոչինչ, հո գնացքից չի՛ ուշանում: Գնա՞նք:

Արդեն բոլորովին մոտեցել էինք, երբ ես հանկարծ նկատեցի, թե ինչպես դժգոհություն ու սրտնեղություն արտահայտող ծամածռություն հայտնվեց Վասյա քեռու դեմքին:

Մենք կանգ առանք:

Ինչո՞ւ է նա այդքան շտապում: Իսկապես, հո գնա՞ցք չի նստելու: Ես սկսեցի նայել այն կողմը, ուր հայացք էր նետում Վասյա քեռին: Ձորակից այն կողմ դեղնած ու չորացած խոտով ծածկված մի փոքրիկ դաշտ էր ու սև անտառ: Ոչ, բոլորովին սև չէր, կանաչ կղզյակի պես առանձնանում էին սոճիները: Իսկ անտառի վրա ցածր կախված էր արևը: Մեծ ու կարմիր: Նրան արժեր նայել:

Ամպերն էլ ցածում կարմիր էին: Կարծես արևը նրանց հրկիզել էր: Ավելի վեր նրանք դեղնում էին, կամաց-կամաց կորցնում լույսն ու կապտագորշ դառնում:

Ես շատ էի ուզում տեսնել, թե ինչպես է Վասյա քեռին դա նկարել, և մի քանի քայլ արեցի դեպի նա, բայց նորից կանգ առա:

— Ի՞նչ պատահեց,— հարցրեց Գլեբը:

— Կամաց,— շշնջացի ես,— սպասի՛ր:

— Ի՞նչ,— նույնպես շշնջաց Գլեբը:

Թե ինչու շշուկի անցանք և ինչու չհամարձակվեցինք Վասյա քեռուն մոտենալ, մենք ինքներս էլ չէինք հասկանում: Բայց այն, որ պետք չէ և չի կարելի մոտենալ, մենք զգացինք միաժամանակ, մի ինչ-որ ակնթարթում:

Եվ նորից ես սկսեցի նայել անտառին, արևին, ամպերին: Ներքևում նրանք արդեն չէին վառվում, չէին հրկիզվում, այլ հանգչում էին, թանձրանում: Վերից էլ ամպերը փոխվել էին, ծանրացել, մուգ կապույտ ու մանուշակագույն դարձել: Ահա թե ինչու էր շտապում քեռի Վասյան, նա շտապում էր պատկերը որսալ, հանձնել կտավին, քանի դեռ արևի հետ նա էլ չէր հեռացվել, փոխվել:

— Գնանք,— ես դիպա Գլեբի ձեռքին, և նա, ոչինչ չհարցնելով, ետ դարձավ:

Հեռանում էինք մենք զգուշորեն: Մի-երկու անգամ ետ նայեցինք: Վասյա քեռին մեզ չնկատեց...

*Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*

# ՊԱՐՈՆ ԲԵԼԼ, ԴՈՒՔ ԽԵԼԱ՞Ռ ԵՔ

**1876**-ի հունիսի 25-ին Ֆիլադելֆիայում բացված «Դարի ցուցահանդեսին» էր ներկայացված նաև Ալեքսանդր Բելլի ցուցանմուշը: Այցելուների ուշադրությունը գրավում էր միայն նրա տակագիրը. «Տեսանելի խոսք»: Բայց սենսացիայի սովոր ֆիլադելֆիացիներին տակագիրը զարմանք չէր պատճառում, իսկ սարքի արտաքինը այնքան էլ գրավիչ չէր: Այցելուներն անցնում էին անտարբերությամբ: Ընդգծված դիմագծերով, բարձրահասակ Բելլը դժգոհ ու լքված կանգնել էր մեկդի և ոչ այն է արհամարհանքով, ոչ այն է հեգնանքով հետևում էր անցուդարձին և ըստեպ-ստեպ նայում իր էության մասը կազմող աշխատանքին. «Ոչ, նրանք արժանի չեն քեզ, քո փոխարեն պետք է անպաբար կանգնեցնել, որ կույ տար կրակը և բերանից գույնզգույն ժապավեններ հաներ»: Նա իրավացի էր. հանձնաժողովը նույնպես անտարբեր գտնվեց:

Բելլը չհամբերեց.

— Ես հիասթափված եմ, ձեր անտարբերությունը չափից անց է,— դիմեց նա հանձնաժողովին:

— Մենք ձեր աշխատանքը վաղը կնայենք,— ասաց հանձնաժողովի անդամներից մեկը:

— Ես այսօր մեկնում եմ Բոստոն, վաղը սկսվում է ուսումնական տարին:

— Ոչինչ, մենք կգնենք առանց ձեզ:

— Դուք այդ անել չեք կարող, իմ սարքի լեզուն միայն ինձ է հայտնի և կխոսի միայն իմ ներկայությամբ:

Հանձնաժողովը տեղի տվեց:

Բելլը մոտեցավ սարքին:

— Պարոնա՛յք, ես մտեղծել եմ մի սարք, որի օգնությամբ ցանկացած հեռավորության վրա կալելի է հաղորդել ցանկացած լուրը, ցանկացած խոսքը: Ես այն կոչել եմ «հեռախոս»: Դուք տեսնում եք իմ հեռախոսի ընդունող մասը միայն, հաղորդող մասը տեղադրված է շինության մյուս ծայրում: Եթե ձեզնից որևէ մեկը ցանկանում է լսել իմ ձայնը, ես կարող եմ գնալ և շինության մյուս ծայրից խոսել նրա հետ: Իմ խոսակցությունը ձեզ կհասնի հաղորդալարի միջով:

Մի քանի րոպե անց հանձնա-

*ԱՐՏԱԿ ՈՍԿԱՆՅԱՆ*

ժողովը ունկնդիր և ականատես եղավ մի անսովոր երևույթի. առջևի ցածրիկ սեղանի վրա դրված անշուք սարքից պարզ ու հատու լսվում էր Համլետի հայտնի մենախոսությունը.

«Լինե՞լ, թե՞ չլինել...»

Հանձնաժողովի անդամները ցնցվեցին: Ինժեներ Ուիլյամ Թոմսոնը, իսկական ինժեներին հատուկ կասկածամտությամբ, հայտարարեց.

— Ներեցեք, պարոնա՛յք, ես չեմ հավատա, մինչև ինքս չփորձեմ:

Առանց վայրկյան կորցնելու նա նետվեց այն սենյակը, ուր տեղադրված էր հաղորդող սարքը: Քիչ անց հանձնաժողովի անդամները լսեցին Թոմսոնի ձայնը. «Ահա և պատասխանը՝ լինե՛լ»:

Ներկաները ծափահարեցին:

Բելլի հեռախոսը հանձնաժողովի անդամներին մոռացնել տվեց ամառային շոգ օրը. սրահում տիրող տոթը: Նրանք մեկը մյուսի ետևից մոտեցան հաղորդող և ընդունող սարքերին, խոսեցին, կատակեցին, երգեցին:

— Ի՞նչ կարող ես անել,— հրաժեշտի պահին ասաց հանձնաժողովի նախագահը,— էդինբուրգցի այս երիտասարդը նոր դարագլուխ բացեց գիտության պատմության մեջ:

Այդ արտահայտությունը Բելլի հասցեին ուղղված գնահատական չէր, այլ ազդ էր ի լուր աշխարհի, որ սովորական լրաբերին փոխարինելու է եկել հաղորդալարով սուրացող հրեղեն սուրհանդակը:

Այդպես ուրեմն, 1876-ի ամռանը աշխարհի մեծերի թիվը մեկով ավելացավ, իսկ այդ մեկը ծնվել էր 29 տարի առաջ՝ 1847-ի մարտի 3-ին, Էդինբուրգում, 19-րդ դարի ճարտասանական արվեստի գիտակներից մեկի՝ Ալեքսանդր Մելվիլ Բելլի ընտանիքում:

Բելլի մանկության տարիներն անցան խաղաղ ու ապահով: Ծնողները չզգացին, թե ինչպես և երբ Ալեքսանդրը դարձավ տասնչորս տարեկան. իրենց համար այնքան հարազատ երգեցիկ ու աղջկական ձայնը փոխվեց, դեմքը պատվեց աղվամազով:

— Դու պետք է գնաս Լոնդոն,— մի օր առավոտյան նախաճաշից առաջ հայտնեց հայրը:

— Դուք այդ հրամայո՞ւմ եք, թե՞ առաջարկում:

— Ի՞նչ տարբերություն, դու պետք է գնաս, որովհետև պապիկը կանչել է:

Առարկելն ավելորդ էր, հոր համար պապի խոսքն օրենք էր:

Վերջապե՛ս խոսքը՝ խոսք, օրենքը՝ օրենք, իսկ Լոնդոնը միշտ էլ մնում էր Լոնդոն:

Նա պապին գտավ իր աշխատասենյակում, գրքի վրա հակված.

— Մե՛ծ հայր, թույլ տվեք ներկայանալ. Ալեքսանդր Բելլ-կրտսեր:

— Այդպես, այդպես... Ձայնդ տղամարդու ձայն է, կեցվածքդ ազնվականի, իսկ առոգանությունդ... Աստվա՜ծ իմ, ուղղակի անտանելի է:

Պապը հարցափորձ չարեց, չսպասեց նույնիսկ, որ թոռը հանգստանա, անմիջապես նրա ձեռքը տվեց ճարտասանության իր իսկ հեղինակած ձեռնարկը և հայտարարեց.

— Չփորձես ինձ հետ հաղորդակցվել, մինչև այս գիրքը ծայրեծայր չսովորես:

Ամեն երեկո քնելուց առաջ Բելլը կարդում էր պապի ընտրած ստեղծագործությունները և ամեն պարբերություն վերջացնելուց հետո կանգ առնում: Եթե Բելլ-ավագը կկոցում էր աչքերը, Բելլ-կրտսերը շարունակում էր, եթե ոչ՝ նորից էր կարդում այդ պարբերությունը: Այսպես գրեթե մի կլոր տարի. կրտսերը կարդաց, ավագը լսեց:

Մեկ տարի անց, Էդինբուրգ վերադարձող Բելլը չէր կասկածում, որ շարունակելու է պապի գործը:

Իսկ պապի գործը պահանջում էր ձայնագիտության խոր իմացություն:

Ֆիզիկայի այդ բնագավառն անծանոթ էր Բելլին:

Ծուտով նրա համար «ձայնի ուժ» «ձայնի ուժգնություն», «ձայնի բարձրություն» արտահայտությունները կորցրին իրենց առօրյա նշանակությունը և ստացան խոր գիտական իմաստ:

Կարճ ժամանակամիջոցում Բելլը տիրապետեց ձայնագիտությանը: Զուշացավ նաև իմացածը գործածության մեջ դնելու առիթը: Հորը ամբիոն առաջարկեցին Բոստոնի խուլհամրերի դպրոցում, բայց վաղօրոք Կանադայում դասավանդելու համաձայնագիր կնքած լինելով, Մելվիլ Բելլը հրաժարվեց և իր փոխարեն առաջարկեց որդուն:

Ատլանտյան օվկիանոսի ափին տարածված քաղաքը կայմերի անտառ էր հիշեցնում: Երթևեկող նավերն անթիվ, անհաշիվ էին:

1871-ին աշնանային մի առավոտ նավահանգիստ մտած նավերից մեկի խցում աչքերը բացեց ամբիոնի երիտասարդ վարիչը՝ Ալեքսանդր Բելլը և հետաքրքրությամբ նայեց շուրջը: Բոստոնը նման չէր ո՛չ Էդինգբուրգին, ո՛չ էլ Լոնդոնին: Բոստոնը նման էր Լոնգֆելլոյի պոեզիային:

Բելլը ժամանակ չունեցավ ծանոթանալու Բոստոնի «գաղտնիքներին»: Նա դեռ չէր հասցրել լինել գիտության և արվեստի բոլոր օջախներում, երբ դպրոցական դասընթացին ավելացավ նաև լեզվի կակազություն և այլ արատներ ունեցող երեխաներին մասնավոր դասեր տալու ծանր գործը:

«Մի՞թե հնարավոր չէ միևնույն հաղորդալարով միաժամանակ հաղորդել մի քանի հեռագիր: Եթե հնարավոր է, ապա ի՞նչ տեսական հիմնավորում պետք է տալ դրան»,—մտածում էր Բելլը դասամիջոցներին, դասերից հետո, գիշերը, երբեմն նույնիսկ դասերի ընթացքում: «Ա՜յ թե հաղորդալարերի խնայողություն կլինի... Դա արդեն գյուտ է, թե չէ առավոտից մինչև իրիկուն նույն մեթոդներով խուլուհամրերին և կակազներին դաս կարող է տալ ամեն մեկը, ով ընդունակ է ուշ թե շուտ սերտել այդ մեթոդները»:

Մի օր առավոտյան, երբ դեռ չէին սկսվել դասերը, նա սովորականի պես մտավ լաբորատորիա, խիստ անհանգիստ շարժումներով ինքն էլ չգիտեր ինչու մոտեցավ դաշնամուրին, բացեց կափարիչը և մատները սահեցին ստեղների վրայով՝ «դո, րե, մի, ֆա, սոլ, լյա, սի...» Բելլն ավարտում էր նոտան և սպասում արձագանքի ավարտին: Արձագանքն անսովոր էր ու հաճելի: Պարզվեց, որ դա ձայնի սովորական անդրադարձում չէր... շարունակություն էր:

Շարունակողները դաշնամուրից ոչ հեռու սեղանին դրված կամերտոններն էին, որոնցից յուրաքանչյուրը խլում էր իր համար նախատեսված նոտան և ձգում, երկարում նույն հանգ ու չափով։

Եթե կամերտոնների մոտ հնչում է երաժշտության որևէ նոտա, ապա արձագանքում է այն կամերտոնը, որը նախատեսված է այդ նոտայի համար։ Եվ քանի որ հաղորդալարով հոսող և երաժըշտական որևէ նոտայի հաճախականությամբ տատանվող էլեկտրական հոսանքը ընդունիչ սարքին կհաղորդի նույն տատանումը, ապա միևնույն հաղորդալարով մի քանի «էլեկտրանոտա» հաղորդելու դեպքում բավական է ընդունիչ սարքի մեջ տեղադրել նրանցից յուրաքանչյուրի տատանման հաճախականությամբ տատանվող կամերտոններ, որպեսզի հաղորդվող ազդանշանները ընդունվեն միևնույն պահին։

Փաստորեն ամեն ինչ ճիշտ էր. մնում էր միայն իրականացնել ու... վերջ։ Իսկ նման սարք իրականացնելու համար մտքի հետ «ոսկի ձեռքեր» էին պետք։ Ալեքսանդր Բելլը առաջին հերթին տեսաբան էր և ոչ փորձագետ, ուստի պետք էր մեկը, որ օգներ նրան։

Ահա և այդ մեկը եղավ պատանի ինժեներ Թոմաս Վաթսոնը։

Նրանց համատեղ աշխատանքի առաջին օրերը հիասթափեցրին պատանի Թոմսոնին։

Բելլը օրը մի նոր միտք էր հղանում և իր հետ քաշ տալիս Վաթսոնին։ Վերջինս պարզապես չէր կարողանում հունի մեջ մտնել։ Տեսությունը փորձից շատ էր առաջ ընկնում։

— Հիմա ի՞նչ է պետք,— մի օր կեսօրին զայրացավ Վաթսոնը,— ընդունիչ և հաղորդիչ սարքերը իրար միացնեմ մեկ հաղորդալարո՞վ։

— Այո՛, հենց այդպես,— սովորականից մի քիչ ավելի կտրուկ արտաբերեց Բելլը և ընդունիչ սարքը տեղափոխեց հարևան սենյակը։

Սկսվեց մի անսովոր իրարանցում։

Մերթ Բելլն էր նետվում հաղորդիչ սարքը տեղադրված սենյակը, մերթ՝ Վաթսոնը ընդունիչ սարքը տեղադրված սենյակը։

— Ինչ-որ անսովոր հոտ եմ զգում, երևի թիթեղները լավ չես մաքրել։

— Հայտնագործության հոտն է,— ասում էր Վաթսոնն ու ծիծաղում։

— Կատակը մի կողմ, երևի կարճ միացում է տվել։

Այսպես գուցե եկար տևեր մեկ հաղորդալարով միաժամանակ մի քանի հեռագիր հաղորդելու փորձերը, եթե վրա չհասներ պատահականությունը։

Իսկ պատահականությունն հասավ ճիշտ ժամանակին, երբ մարդկությանը ոչ այնքան կատարելագործված հեռագրասարք, որքան հեռախոս էր պետք։

— Ի՞նչ էիք անում դուք, կըրկնեք նորից, կրկնե՛ք, լսո՞ւմ եք,— հաղորդիչ սարքի սենյակի բաց դռնից այլայլված ներս խուժեց Բելլը։

Խոսեց, կարգադրեց և նորից վազեց ընդունիչ սարքի սենյակը։

Իսկ ի՞նչ էր անում Վաթսոնը։ Առանձնապես ոչինչ. հաղորդող սարքի թիթեղներից մեկի ազատ ծայրը ոչ մի կերպ չէր կարողանում հանել սարքի ճեղքից, ուր պատահաբար ընկել էր։ Նրա հաստ ու կարճ մատները քսվում էին գրեթե բոլոր թիթեղներին, և փաստորեն նրանց ազատ ծայրերը միանում էին իրար։

Բելլի նուրբ լսողության համար այդքանն էլ հերիք էր, որ ընդունիչ սարքից լսվող թույլ զնգոցը որսար։

— Թոմա՛ս, մենք ծիտ էինք փնտրում, բայց արծիվ գտանք։ Այսօր, այս պահին հայտնագործվեց հեռախոսը։ Թիթեղի ազատ ծայրը, որ ընկել է սարքի ճեղքի մեջ, փաստորեն, բացում ու փակում է շղթան։ Եվ ի՞նչ. այդ ընթացքում թիթեղը տատանվում է և նույն հաճախականությամբ տատանումներ հաղորդում նաև իր կողքին գտնվող էլեկտրամագնիսին։ Այդ է տարբերությունը մինչև հիմա գործող հեռագրասարքի և հենց նոր հայտնագործված հեռախոսի։

— Ուրեմն հեռախոսի համար անհրաժեշտ է չընդհատվող էլեկտրական հոսա՞նք, միստր...

— Այո՛, Թոմա՛ս, որը փոփոխվի, սակայն, հաղորդվող ձայնի տատանումներին ճիշտ համապատասխան։

— Էլեկտրական շղթայի վարքըն ինձ նույնքան հասկանալի է, որքան մեկ անգամ մեկը, մի՛ստր, բայց թե ինչպիսին պետք է լինի հեռախոսակապի համար անհրաժեշտ չընդհատվող էլեկտրական հոսանքը, չեմ կարող ասել։

— Դա հասկանալու համար, Թոմա՛ս, էլեկտրականության մասնագետ լինելը քիչ է, պետք է նաև ձայնագիտություն իմանալ։ Էլեկտրականություն և ձայնագիտություն, ահա այս երկու գիտությունների համադրությամբ կարելի է մարդկային ձայնը ճանապարհել ցանկացած ուղղությամբ և ցանկացած հեռավորության վրա...

Հետևելով Բելլի ցուցումներին, Վաթսոնը կարճ ժամանակամիջոցում պատրաստեց ժամանակակից հեռախոսի նախատիպը և գրեթե հարյուր տարի առաջ Բոստոնում հնչեց առաջին հեռախոսազրույցը։

— Մի՛ստր Բել, դուք ինձ լըսո՞ւմ եք։

— Լսո՛ւմ եմ, Թոմա՛ս, լսո՛ւմ եմ,— ընդունիչի սենյակից պատասխանեց Բելլը։

Բելլի և Վաթսոնի հեռախոսում ձայնային ալիքներն ստիպում էին տատանվել ճկուն թաղանթը՝ մեմբրանը։ Վերջինիս տատանումները հաղորդալարով ընդունիչ էր հասցնում էլեկտրական հոսանքը և փոխանցում դարձյալ մեկ ուրիշ մեմբրանի, որն էլ հենց վերարտադրում էր բավական պարզ ու լսելի։

Շուտով Բելլը պատենտային բյուրո հայտ ներկայացրեց «հեռագրով ձայնային հնչյունները հաղորդող» գործիքի, այլ կերպ ասած, հեռախոսի գյուտի վերաբերյալ։ Այդ նույն օրը, մի քանի ժամ անց նման հայտով պատենտային բյուրո ներկայացավ նաև ինժեներ Էլիշա Գրեյը։ Պարզվեց, որ նրանց հեռախոս ստեղծելու սկզբունքները գրեթե համընկնում են։

Ինչպե՞ս վարվել, ո՞ւմ տալ նախապատվությունը։ Սկսվեց մի դատավարություն, որի ընթացքում պիտի որոշվեր, թե ում է պատկանում հեռախոսի գյուտը. Բելլի՞ն, թե՞ Գրեյին։ Գյուտը վաճառելու իրավունքը կունենար

նա, ով ով կստանար արտոնագիրը:

Երկար ու ձիգ դատավարության ընթացքում պարզվեց, որ Բելլի հեռախոսն արդեն պատրաստ է, իսկ Գրեյը նոր միայն վերջացրել է նախապատրաստական աշխատանքները: Եթե Բելլը դատարան չներկայացներ հեռախոսի գործող մոդելը, ապա նախապատվությունը կտրվեր Գրեյին, քանի որ վերջինս ամերիկացի էր: Դեռևս Անգլիայի քաղաքացի համարվող Բելլը հաղթեց միայն նրա համար, որ փաստի առաջ կանգնեցրեց դատավորներին:

1877-ի հունվարին Վաշինգտոնում փիլիսոփայական ընկերության նիստում Բելլը հանդես եկավ զեկուցումով և ցուցադրեց հեռախոսը: Նրա զեկուցումը հիմնականում նվիրված էր Բոստոն—Պորտլանդ հեռախոսագծի բնտեղծման հարցերին: Բելլն ունկընդիրներին ապացուցեց, որ միջքաղաքային հեռագրագծերը հեշտությամբ կարելի է փոխարկել հեռախոսագծերի: Այնպես որ Ամերիկան կարելի էր պատել հեռախոսացանցով՝ խանգարող հանգամանքներ չկային, մանավանդ երբ քաղաքներն արդեն իրար միացած էին հեռագրագծերով:

Ֆրանսիայի «անմահները» շուտով Բելլին շնորհեցին դեռ Նապոլեոնի օրոք սահմանված Վոլտայի անվան մրցանակը՝ 50 հազար ֆրանկ: Մրցանակի հետ միասին Բելլն արժանացավ Պատվավոր լեգիոնի շքանշանի:

# ԲՆՈՒԹՅԱՆ ՏԱՐՐԵՐԻ ՓՈԽԱԴԱՐՁ ԿԱՊՆ ՈՒ ՊԱՅՄԱՆԱՎՈՐՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր



Ազոտի շրջանառությունը բնության մեջ

## 6. ՄԱՐԴԸ ԵՎ ԱԶՈՏԻ ՇՐՋԱՆԱՌՈՒԹՅՈՒՆԸ ԿԵՆՍՈԼՈՐՏՈՒՄ

Ձնայած «ազոտ» նշանակում է «անկյանք», այնուամենայնիվ, կյանքն առանց ազոտական միացությունների գոյություն ունենալ չի կարող: Դեռ ավելին, եթե ազոտը մթնոլորտի բաղադրության 78 տոկոսը չկազմեր, ապա բոլոր կենդանի օրգանիզմների շնչառությունը ընդհանրապես անհնարին կդառնար: Սպիտակուցային նյութերը, որոնք կյանքի հիմքն են, 16—18 տոկոս ազոտ են պարունակում:

Այս առումով կենդանի բնության գոյությունը կախված է նաև ազոտական միացությունների առկայությունից: Բնության պահպանության արմատական շահերը պահանջում են, որպեսզի բնության մեջ ազոտի միացությունները չպակասեն, չվերածվեն մթնոլորտի ազատ ազոտի: Բանն այն է, որ ազոտը չեզոք գազ է և սովորական ջերմաստիճանում այլ տարրերի հետ միացություններ չի տալիս: Այս կենսածին տարրը մտնում է մի շարք խիստ կարևոր օրգանական միացությունների կազմի մեջ: Մեծ քանակությամբ ազոտ է պարունակվում զանազան կենսածին հանածոներում (նավթ, բիտում, տորֆ):

Բնության մեջ ազոտը միացություններ է առաջացնում մթնոլորտում տեղի ունեցող էլեկտրական հզոր պարպումների ժամանակ, երբ միանում է թթվածնի հետ և լուծվելով մթնոլորտում պարունակվող ջրային կաթիլների մեջ, վեր է ածվում ազոտական թթվի և ամպրոպային անձրևների հետ թափվում երկրի վրա: Երկրագնդի վրա օրական տեղի է ունենում 40 հազար ամպրոպ և դրանք մեկ հեկտար հողի ազոտի պաշարները ավելացնում են տարեկան 15 կիլոգրամով:

Ազոտական միացությունների քանակությունը բնության մեջ մշտապես համալրվում է նաև զանազան մանրէների գործունեության շնորհիվ: Մի շարք կապտականաչ ջրիմուռներ, պալարաբակտերիաներ և հողային բակտերիաներ ընդունակ են կլանել մթնոլորտային ազոտը և այն վերածել ազոտի օրգանական միացությունների: Ազոտ ֆիքսող բակտերիաների գործունեության շնորհիվ մեկ հեկտար տարածության վրա տարեկան կուտակվում է 200—800 կգ

Սկիզբը՝ №№ 6—9, 12, 1978 թ.

կապակցված ազոտ: Միայն թիթեռնածաղկավոր բույսերի արմատների պալարներում ապրող բակտերիաները մեկ հեկտար տարածության վրա տարեկան ֆիքսում են մինչև 150 կգ ազոտ:

Սակայն հողում ազոտի քանակությունը միշտ էլ անբավարար է բույսի սննդառության համար: Այդ է պատճառը, որ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման ամենակարևոր պայմաններից մեկը ազոտական պարարտանյութերի արտադրությունն է: Ազոտական առաջին պարարտանյութը՝ չիլիական սելիտրան արտադրվել է սրանից 150 տարի առաջ: Ներկայումս ամբողջ աշխարհում տարեկան հողին է տրվում 30—35 միլիոն տոննա ազոտ՝ քիմիական ձեռնարկություններում արտադրվող հանքային պարարտանյութերի ձևով: Սակայն դրանց մեծ մասը հեշտությամբ լուծվելով ջրում, քշվում են դեպի Համաշխարհային օվկիանոս՝ կազմելով վերջինիս պարարտանյութերով աղտոտման 30 տոկոսը: Ազոտի մյուս մասն էլ, անցնելով գազային վիճակի՝ լրացնում է մթնոլորտի ազատ ազոտի պաշարները:

Այս բոլորի հետևանքով ազոտի, հատկապես ցամաքային ազոտի կենսաերկրաքիմիական շրջանառության հաշվեկշռում մարդու միջամտությամբ խախտումները զգալի են: Իսկ դա մարդու համար խիստ բացասական հետևանքներ է ունենում:

Բնության մեջ ազոտի կուտակման և բնականոն շրջանառության կարևոր գործոններից մեկն էլ ինդուստրիալ անասնապահության և թռչնաբուծության թափթփուկներն են, ժամանակակից քաղաքների կեղտաջրերը:

Խիստ տագնապալից է ազոտի օքսիդների թափանցումը դեպի ստրատոսֆերա, որին նպաստում են ատոմային պայթեցումները և գերձայնային ինքնաթիռների գազային արտանետվածքները: Դա կարող է հանգեցնել ստրատոսֆերայի օզոնային էկրանի քայքայմանը, որի հետևանքով դեպի տրոպոսֆերա և կենսոլորտ կթափանցեն ուլտրամանուշակագույն ճառագայթները, մահացու սպառնալիք ստեղծելով կյանքի գոյության համար:

Ազոտական նյութերի սինթեզի բնական ընթացքի խիստ ձևափոխությունը մարդու գործունեության հետևանքով, ինչպես նաև արդյունաբերության բուռն զարգացումը, իրենց հերթին ազդում են ազոտի կենսաերկրաքիմիական շրջանառության վրա: Այսպես օրինակ, ազոտի բալանսի խախտման հզոր միջոց են հանդիսանում ժամանակակից ջերմաէներգետիկ արդյունաբերությունն ու տրանսպորտը: Քարածխի, նավթի, մազութի, բենզինի, տորֆի, թերթաքարերի այրումը տարեկան տալիս է մոտավորապես 200—300 միլիոն տոննա ազոտի գազեր և աէրոզոլեր:

(Շարունակելի)

Լույս է տեսնում 1923 թվականից



ՊԻՈՆԵՐ 1. 1979 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ



Շապիկի առաջին էջը՝ [illegible]



«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015 Ереван-15, ул. Кармир банаки, №15.

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—82—72, 58—08—88, 56—14—96:

ՎՖ 05092: Պատվեր 2173: Տպաքանակ 50700: Տպ. 3 մամ.:
Ստորագրված է տպագրության 21 XI 1978 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:

ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806



# Ժամացույց-օրացույց 1979

Հաճախ մեզ անհրաժեշտ է լինում իմանալ, թե ցանկացած ամսի, ցանկացած օրը, շաբաթվա ո՞րերորդ օրն է:

Դրա համար նկարում ցույց տրված ժամացույցի թվատախտակի 1—12 թվանշաններին տալիս ենք համապատասխան ամիսների անունները, այսինքն՝ 1-ը՝ հունվար, 2-ը՝ փետրվար, 3-ը՝ մարտ և այլն...

Նկար-ժամացույցով կարող ենք հեշտությամբ իմանալ, թե 1979 թվականի ցանկացած օրը շաբաթվա ո՞րերորդ օրն է: Դրա համար պետք է իմանալ.

1. Եթե մեզ հետաքրքրող օրվա և տվյալ ամսին համապատասխանող կետերի գումարը առանց մնացորդ բաժանվում է 7-ի, ուրեմն օրը կիրակի է: 2. Եթե մնացորդով է բաժանվում, մնացորդն է ցույց տալիս շաբաթվա օրը: 3. Եթե գումարը 7-ից փոքր է, հենց գումարն էլ ցույց կտա շաբաթվա օրը:

Օրինակ՝ անհրաժեշտ է իմանալ 1979 թվականի մայիսի 1-ը շաբաթվա ո՞րերորդ օրն է: Մենք գիտենք, որ մայիսը տարվա 5-րդ ամիսն է, և նկար-ժամացույցի 5 թվանշանի դիմաց կա 1 կետ: Մայիսի 1-ին ավելացնում ենք 1: Գումարը՝ 2, որը 7-ից փոքր է, ուրեմն այդ օրը երեքշաբթի է:

Նույն ձևով կարող եք իմանալ որ մարտի 8-ը հինգշաբթի է, սեպտեմբերի 1-ը շաբաթ է և այլն...

Նկատի պետք է ունենալ, որ բոլոր ամիսների առաջին կիրակին կլինի ամսի 1—7-ը:

Ձեր ձեռքի տակ եղած օրացույցով հաշվեցեք և կհամոզվեք, որ 1979 թ. հունվարի առաջին կիրակին ամսի 7-ին է, փետրվարինը 4-ին, մարտինը՝ նույնպես 4-ին և հաջորդաբար՝ 1, 6, 3, 1, 5, 2, 1, 5, և վերջապես դեկտեմբերի առաջին կիրակին ամսի 3-ն է:

Նշված թվերը եթե առանձին-առանձին հանեք 7-ից, ապա կստանաք համապատասխան ամիսների դիմաց նշվելիք կետերը, այսինքն հունվարին կետ չի լինի, իսկ հաջորդ ամիսներին համապատասխանաբար՝ 3, 3, 6, 1, 4, 6, 2, 5, 6, 2 և դեկտեմբերի դիմաց 4 կետեր:

Այս սկզբունքով դուք կարող եք ժամացույց-օրացույցներ կազմել բոլոր տարիների համար:

*ԱՐՏԱՎԱԶԴ ՍԱՐԳՍՅԱՆ*